# ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՍՊԱՐՏԱԿԻԱԴԱՆ










ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 8
ՕԳՈՍՏՈՍ
1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ

# ԲԱՍԿԵՏԲՈԼԻՍՏՆԵՐԸ

*ՀԵՆՐԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ* *Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Հագած զգեստ սպորտային
Մտանք անա հրապարակ.
Փոքրիկ մարզում, ապա սուլիչ.
Խաղն սկսվեց տեմպով արագ:
Այստեղ չկա դարպասապահ,
Ու չես գտնի ոչ մի դարպաս,
Բայց կան անշուշտ գնդակ ու գոլ,
Ֆուտբոլ չէ սա, այլ՝ բասկետբոլ:





Պիտի առնես բարդու հասակ,
Կամ վեր ելնես, ինչպես մի սյուն,
Որ զամբյուղին ձեռքդ պարզած՝
Գնդակն այնտեղ նետես իսկույն.
Բայց արի տես՝ մրցման պահին,
Տղերքի մեջ բոլորից կարճ
Շառան հմուտ բասկետբոլիստ՝
Իր փոքրությամբ ծիծաղաշարժ,
Գնդակն այնպես վարժ է նետում,
Որ ընկնում է զամբյուղը ճիշտ.
Մինչդեռ Համոն բարդեհասակ
Վրիպում է, վրիպում միշտ...
Խաղը թեժ է: Ու անզիջում
Մարտնչում են թիմերն համառ.





Քիչ է մնում խաղավերջին,
Բայց հաշիվն է դեռ հավասար:
Ժամանակն է հալվում արագ
Ու մոտենում իր վախճանին.
Տուգանք: Նետեց կարճլիկ Շառան
Ու հաղթանակ բերեց թիմին:
Թեկուզ լինես բարձրահասակ,
Թեկուզ անգամ լինես բզուկ,
Հարկավոր է քեզ լավ մարզանք
Ու գնդակը նետել դիպուկ:

# ՄԱՐԶԻՉՆ ՈՒ ԻՐ ՍԱՆԵՐԸ

ԳՐ. ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

1954 թվականի ամառն է։ Շոգ։ Երկնքից կարծես կրակ է թափվում։ Իսկ Երևանի Մոսկովյան փողոցի ջրավազանում և ջրավազանի շուրջը աղմուկ է, ուրախություն։ Հնչում է պատանիների ուրախ ծիծաղն ու ծափը։

— Ռոբե՛րտ, Ռոբե՛րտ,— գոչում են ավազանի եզերքն ի վեր վազող տղաներն ու աղջիկները։

— Շտապի՛ր, Էդիկ, մի քիչ էլ շտապիր։

— Կոտիկը, Կոտիկը առջևից է գնում,— ծափ են տալիս մի քանի հոգի։

Եվ թեև լողորդները համարյա չեն լսում դրսից եկած աղմուկը, երեխաները շարունակում են բղավել, քաջալերել իրենց ընկերներին։

Երևանի քաղաքային ճամբարների լողի մրցումներն են։ Այնպիսի եռուզեռ ու աղմուկ է տիրում ջրավազանի շուրջը, որ Մոսկովյան փողոցով երթևեկողները մոռանում են իրենց գործը, կանգնում և ժպտադեմ նայում են արևից սևացած ու ամրացած աշխույժ պատանիների այդ խմբին։ Ոմանք նույնիսկ մոտենում են, ոգևորվում և իրենք էլ մասնակցում են ուրախ աղմուկին։

Ջրավազանին մոտեցած երիտասարդներից մեկը ուշադիր դիտում է յուրաքանչյուր պատանի լողորդին և ձեռքի փոքր թղթի վրա նշումներ անում։ Դա Յուրի Բաբայանն է, լողի մարզիչը։

Ահա ավարտվում են մրցումները։ Ջրավազանը լցվում է հարյուրավոր երեխաներով։ Իսկ մի խումբ պատանիներ հավաքվել են Յուրիի շուրջը։ Այդ երեխաներից ոմանք ամաչում են, պահվում իրենց ընկերների ետևում, իսկ ավելի համարձակները՝ փայլուն և հետաքրքրված աչքերով նայում են իրենց կանչող երիտասարդին։

— Դուք ուզո՞ւմ եք լողալ սովորել,— հարցնում է Յուրին և նայում տղաներին։

— Մենք լողալ գիտենք,— ասում է մեկը։

— Ուզում ենք,— կամաց փսփսում է մյուսը։

— Իսկ դուք լողալ գիտե՞ք,— հարց է տալիս երրորդը։

Յուրին ժպտում է, հայացքով գրկում բոլորին և ցածր ու համոզող ձայնով ասում իր շուրջը խմբված պատանիներին։

— Տղաներ, ես տեսա, թե դուք ինչպես էիք լող տալիս։ Ձեզանից ոմանք կարողանում են իրենց պահել ջրի վրա, ոմանք նույնիսկ մի կերպ առաջ են շարժվում, բայց բոլորդ էլ չգիտեք լողալ։

— Չգիտե՞նք, բա Կոտիկը։

— Իսկ մենք ինչպե՞ս պիտի սովորենք լողալ, քեռի։

— Մեզ ոչ ոք չի սովորեցրել։

— Լողալն ինչ սովորեցնելու բան է որ, պիտի լող տաս, լող տաս ու սովորես։

Յուրին նորից նայում է տարբեր հայացքներով ու տարբեր նկարագիրներով այդ տղաներին, ժպտում ու ասում.

— Լող տալ ոչ միայն կարելի է սովորել, այլև պետք է սովորել։ Դա շատ անհրաժեշտ բան է։

Տղաներն ավելի են մոտենում, որպեսզի լավ լսեն այդ շատ ցածր ձայնով, բայց ինքնավստահ խոսող երիտասարդին։ Կարծես ինչ-որ ուժ է բխում նրանից ու համակում իրենց։

— Եկեք լողի խմբակ կազմենք,— շարունակում է Յուրին։— Ես կպարապեմ ձեզ հետ, կսովորե[illegible] լողալ, ավելի արագ և ավելի [illegible]

— Այդ ժամանակ մենք կհաղթենք մեր Հարևան ճամբարին,— ուրախությունը չի կարողանում զսպել մեկը։

— Իսկ մեր դպրոցը շրջանում առաջին տեղը կբռնի։

— Մենք կկարողանա՞նք Սևանում լողալ,— ցածր, հուզված ձայնով հարցնում է մի պատանի։ — Անցյալ տարի հայրս ինձ Սևան տարավ և ես... վախեցա։

— Եթե դուք սովորեք լողալ, կկարողանաք ոչ միայն Սևանում, այլև Սև ծովում լողալ, օվկիանոսում լողալ։

— Ինչ լա՜վ է...

— Հը, համաձա՞յն եք, խմբակ կազմենք։

— Համաձայն ենք, կազմենք։

— Դե, ասացեք ձեր անունները,— Յուրին գրպանից հանում է բլոկնոտը և սկսում գրել։

— Իսկ ե՞րբ ենք սկսելու,— հարցնում են անհամբեր տղաները։

— Վաղվանից,— ասում է Յուրին,— բայց եկեք պայմանավորվենք, որ դուք խստիվ կկատարեք իմ ասածները։

— Կկատարենք, ընկեր Բաբայան,— բոլորի կողմից խոստանում է մեկը, որ արդեն իմացել էր մարզիչի անուն-ազգանունը։

— Եվ հետո, պետք է դպրոցում լավ սովորեք։ Եկեք այժմվանից պայմանավորվենք։ Ով լավ չի սովորում, անկարգություններ է անում, խմբակում չենք պահի։

Տղաները լռջանում են ու լռում։



— Համաձա՞յն եք,— հարցնում է մարզիչը։

— Համաձայն ենք,— ցածր ու լուրջ պատասխանում են տղաները։

***

Հաջորդ օրվանից խմբակն սկսում է պարապել։ Որոշված ժամից էլ շուտ տղաները գալիս են ջրավազան և սպասում իրենց մարզիչին։ Նրանք տանը պատմել են այդ մասին և ստանալով ծնողների համաձայնությունը, այժմ անհամբեր սպասում են։

— Ահա և մարզիչը,— դեռ հեռվից նկատում են տղաները և ընդառաջ վազում։

Առաջին օրը դժվար է լինում։ Պատանիները չեն կարողանում մոռանալ հին ձևերը, ուզում են ամեն ինչ միանգամից սովորել։ Յուրի Բաբայանը մեծ համբերատարությամբ սովորեցնում է նրանց։

Սկսվում են դասերը, բայց խմբակը շարունակում է իր պարապմունքները։ Երեխաներից մի քանիսը հուսահատվում են, խմբակը փոքրանում է, բայց մյուսները շարունակում են համառությամբ...

Մի տարի հետո, դպրոցականների Երևանի ու Հայաստանի մրցումներում արդեն մի քանիսը աչքի ընկան։ Կրծքի վրա ազատ լողի մեջ Կոտիկ Մուրադյանը գրավեց առաջին տեղը, իսկ մեջքի վրա ձևում՝ Ռոբերտ Միքայելյանը։ Ամառը Կոտիկը մասնակցեց Կիևում կայացած պատանիների համամիութենական երկրորդ սպարտակիադային և հանձնեց երկրորդ կարգի լողորդի նորմաները։ Դա շատ մեծ արդյունք էր։ Բայց Յուրի Բաբայանն ուրախ չէր։ Մարզիչն իր սանի մոտ նշմարում էր այնպիսի գծեր, որոնք մտատանջություն էին պատճառում։ Դպրոցում լավ չէր սովորում, անտեղի վիճում էր իրենից մեծերի հետ, հպարտանում էր սպորտում ձեռք բերած իր հաջողություններով։ Այդպես չէին մյուսները՝ Ռուդիկը, Սյոման, Իվանը, Յուրիկը։

Եվ ահա պատահեց այն, ինչից վախենում էր մարզիչը։ Կոտիկը մի անգամ խիստ վիրավորեց մի ուրիշ խմբակի մարզիչին։ Յուրի Բաբայանը հավաքեց տղաներին։

— Ի՞նչ անենք Կոտիկի հետ,— մարզիչը միանգամից և պարզ հարցը դրեց սաների առաջ,— նա դպրոցում լավ չի սովորում, ծնողներին չի լսում և վերջապես այս վերջինը։ Ի՞նչ անենք նրա հետ, դո՛ւք որոշեցեք։

Տղաները լռում էին։ Նրանցից յուրաքանչյուրը գիտեր, թե ինչքան ծանր էր այդ դեպքը մարզիչի

համար, նրանցից յուրաքանչյուրը արդարացուցիչ որևէ բան էր փնտրում, բայց չէր գտնում։

— Չե՞ք ասում,— խոսեց մարզիչը,— լավ, այդ դեպքում ես կասեմ։— Նա զսպեց իրեն, որպեսզի չարտահայտի բարկությունը, բայց դժվար եղավ։ — Այսօրվանից Կոտիկը մեր խմբակի անդամ չէ։ Մենք չենք կարող մեր ընկերը համարել այն տղային, որը չի հարգում իրենից մեծերին։

***

«Դինամո» սպորտ ընկերության ջրավազանում աշխույժ իրարանցում է։ Երևանի 1956 թվականի առաջնության համար մրցում են քաղաքի հինգ շրջանների դպրոցականները։ Մրցողների մեջ են նաև Յուրի Բաբայանի խմբակի տղաները։ Դատավորը ստարտի մոտ է կանչում մեջքի վրա ազատ լողի մասնակիցներին։

Երկրորդ ուղու դիմաց կանգնած է արևից սևացած մի ամրակազմ պատանի։ Դա Ռոբերտ Միքայելյանն է, որը հաջողությամբ հանձնելով 7-րդ դասարանի քննությունները, փոխադրվել է ութերորդ դասարան։

— Ռոբերտը կհաղթի,— վստահ ասում է մի պատանի։

— Դա դեռ հայտնի չէ,— Վլադիկը նրանից արագ է լողում։

Դատավորի կարմիր դրոշակը թափով իջնում է ցած, և հինգ լողորդներ միանգամից մեջքի վրա առաջ են նետվում։

Սկզբում բոլորը իրար հետ են լողում. ահա երկուսը մի փոքր առաջ անցան։ Նրանք առաջին հիսուն մետրը համարյա միասին ավարտեցին։ Սկսվեց երկրորդ կեսը։

— Ռոբե՜րտը, Ռոբե՜րտը առջևում է։

— Վլադի՛կ, Վլադի՛կ,— լսվում են ձայներ։

Մյուսները ետ են մնացել։ Բոլորի ուշադրությունն այդ երկուսի վրա է բևեռված։

Ահա Ռոբերտն առաջ անցավ։ Վլադիկը փորձեց հասնել, բայց Ռոբերտը լողում է վարժ ու համաչափ, ոչ մի պահ չդանդաղեցնելով ընթացքը։ Ֆինիշն արդեն մոտ է։ Երեխաներն աղմկում են, ծափահարում։ Ռոբերտն առաջինն է ավարտում հարյուր մետր տարածությունը։

Ընկերները շրջապատեցին Ռոբերտին։ Նրան են ուղղված թղթակիցների լուսանկարչական ապարատները։ Բայց Ռոբերտն սպասում էր իր մարզիչին։ Տղաները ճանապարհ բացեցին։ Գոհունակության ժպիտը հազիվ զսպելով Յուրի Բաբայանը մոտեցավ խմբին, ձեռքը դրեց Ռոբերտի ուսին.

— Լավ էր,— ասաց նա,— մեկ րոպե 22 վայրկյան, լավ արդյունք է, բայց անհրաժեշտ է ավելի շատ աշխատել։ Եթե դու կարողանաս 6 վայրկյան արագ անցնել այդ տարածությունը, կլրացնես առաջին աստիճանի լողորդի նորման և իրավունք կնվաճես մասնակցելու ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադային, իրավունք կնվաճես գնալու Մոսկվա և մրցելու երկրի ուժեղագույն լողորդների, սպորտի վարպետների հետ։

Միանգամից բոլորը լռեցին։ ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադա։ Նրանցից ոչ ոք այդ մասին չէր էլ երազել, և ահա գուցե Ռոբերտին հաջողվի գնալ։

Տղաները ցրվեցին։ Նոր լողորդներ էին շարվել ջրավազանի ստարտի մոտ։ Իսկ Ռոբերտը մտածում էր այդ հեռանկարի մասին։ «Կկարողանա՞մ արդյոք», հարց տվեց ինքն իրեն, ու կարծես ինչ-որ ձայն իր ներսից պատասխանեց. «Աշխատի՛ր, ավելի՛ աշխատիր, և անպայման կկարողանաս»։

Հայացքով նա փնտրեց մարզիչին, իր ավագ ընկերոջը։ Բաբայանը հեռվից իրեն էր նայում։ Նրանց հայացքներն իրար հանդիպեցին։ Մարզիչն ու սանը ժպտացին։ Այդ ժպիտը շատ բան էր նշանակում, բայց ամենից առաջ նշանակում էր այն, որ նրանք՝ մարզիչն ու սանը շատ լավ հասկանում էին իրար և շատ սիրում։



ԳԱՐԻԿ ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

# Վեճը



Դարձանաձորդ գետի ափով,
Ո՞վ իմանա ուր և ինչու,
Քայլում էին Կիմն ու Սամոն
Եվ իրար հետ տաք-տաք վիճում:

Կիմն ասում է.— ինձ հավատա,
Սպորտը քո՝ խաղ է անմիտ.
Սամոն էլ, թե,— առանց դրա՝
Չես տարբերվի հաշմանդամից...

Դուցե բանը հասներ կռվի,
Թե չլիներ այն, ինչ եղավ.
Սայթաքեց ոտքը խեղճ Կիմի,
Եվ ջուրն ընկավ նա գլխիվայր:

Սամոն ուզեց կուշտ ծիծաղել,
Բայց լրջացավ դեմքը իսկույն,—
Գետում ընկերն իր կիսախեղդ,
Աղաղակում էր՝ օգնություն...

Սամոն ջուրը նետվեց արագ
Եվ ափ հանեց գունատ Կիմին.
Ապա ժպտուն դիմեց նրան.
— Սպորտն ի՞նչ է, ասա հիմի:




Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Անձրևից հետո օդը մաքուր և հաճելի դարձավ: Հայկն ու Վազգենը մի պահ դադարեցրին աշխատանքը, գործիքները գցեցին ու փոսից դուրս գալով, պառկեցին խոնավ կանաչի վրա: Նրանց կարճ անդրավարտիքներն ու անթև մայկաները թաց էին ու ցեխոտ, բոբիկ ոտքերը ծածկված էին շեկ կավի հաստ շերտով, թևերն ու երեսները պսպղում էին գորշ փայլարի նման, իսկ մազերը խանձվել էին ու խճճվել ինչպես թաղիք...

Բերդատեղը պեղելու գաղափարն առաջացավ ամառային արձակուրդների սկզբին, երբ հանդում նրանք լսեցին կոլտնտեսության հովիվ Հովսեփ պապի պատմությունը:

— Էն սարի ծերին երկու դիք քար կա,— ասաց պապը,— էն քարերը, նմանապես, բերդի քարերն են: Ես, որ հլա ձեզ նման մի պստղունց տղա էի, էնտեղ մի վարդապետ հող էր քանդել տալի: Էդ ժամանակ մարդիկ ասում էին, թե էդ բերդը Աշոտ Երկաթ թագավորի բերդն ա էլել:

— Պա՛պ, բա հետո այնտեղից ոչինչ չհանեցի՞ն:

— Հանեցին, ո՞նց չէ, մի քանի ոսկոր հանեցին ու մին էլ մի կճուճ:

— Ի՞նչ կճուճ:

— Կճուճ էր էլի, մենք ասացինք. վայթե միջին ոսկի-մոսկի ըլի, համա դատարկ էր, մենակ տակին մի հատ պղնձե թաս կար:

— Հետո՞:

— Հետո, էդ վարդապետն էնքան ուրախացավ էդ քոսոտ թասի համար, որ փորող տղերքին մի-մի արծաթ մանեթանոց տվեց...

— Հետո՞:



— Էքսի տարին էլ պտի գար, համա լսեցինք, որ մեռել ա։ Լավ մարդ էր ողորմած հոգին, ոնց որ ըսկի վարդապետ չըլեր, միամիտ էր, շատ էր միամիտ։ Ասա, տո, տնաշեն, պղնձի թաս ես ուզում, արի տուն, երկուսը տամ, բա մարդ էլ էն մաշված թասին էնքան փող կտա՞...

Պապը լռեց, բայց այդքանն էլ բավական էր Հայկի ու Վազգենի սրտերը կրակ գցելու համար։ Հաջորդ օրը նրանք մանրամասն ուսումնասիրեցին բլուրը, գտան երկու «դիք» քարերը, որոնց մոտ «ողորմած հոգի» վարդապետի կատարած պեղումների հետքերն արդեն չկային։ Առհասարակ բերդատեղում այժմ նշանավոր ոչինչ չկար։ Բլուրն անտառապատ էր, իսկ տափակ կատարը, որ բնական բացատի տպավորություն էր թողնում, թվում է, թե ոչինչ չէր պահել երբեմնի բերդից, եթե չհաշվենք հատ ու կենտ քարերը, որ անկարգ ցրված էին բացատի մեջ՝ մամռակալած ու ցածրիկ թփուտներով շրջապատված։

Երկու օր հետո նրանք արդեն սկսել էին պեղումները։ Աշխատում էին գաղտնի։ Ամեն առավոտ տղաների հետ իջնում էին գետը լողանալու ու քիչ հետո աննկատ հեռանում։ Գետափին, աղմուկի ու իրարանցման մեջ ոչ ոք չէր նկատում նրանց բացակայությունը, իսկ աշխատանքի վայրում հետաքրքրվող աչքերից նրանց թաքցնում էր գյուղի եզրից սկսվող խիտ ու անհյուրընկալ անտառը։

Աշխատանքը գնալով ծանրանում էր։ Սկզբում նրանց թվում էր, թե բահի ու քլունգի առաջին հարվածները նրանց առաջ բացելու են բերդի խորհրդավոր պատմությունը, բայց օրերն անցնում էին, փոսը գնալով խորանում էր, իսկ պղնձե թասը չկար ու չկար։ Նրանք արդեն որոշել էին փոխել պեղումների տեղը։ Հայկը դուրս էր եկել փոսից, իսկ Վազգենը դեռևս ծույլ-ծույլ փորում էր քլունգով։

Հանկարծ նա բարձրաձայն ասաց.

— Հա՛յկ։

— Հը՞։

— Մի այստեղ արի։

Հայկը փոսը թռավ։

— Նայի՛ր։

Հայկն աչքերը չռեց, բայց ոչինչ չէր տեսնում։

— Հը՞։

— Բան չեմ տեսնում։

— Այս կողմը նայիր, քարը չե՞ս տեսնում։

Հայկը չոքեց փոսի հատակին։ Իսկապես փոսի ծայրին երևում էր մի սրբատաշ քար։

Նրանք նոր ուժով կպան աշխատանքի, բայց քարը տեղից շարժել չհաջողվեց։ Երբ շրջապատի հողը ետ էին տալիս, զարմանքով նկատեցին, որ քարի կողքին մեկ ուրիշն էլ կար՝ դարձյալ տաշված։

***

Առաջին քարը նկատելուց հետո անցել էր ութ օր։ Այժմ երեք մետր երկարությամբ պատի երեսն արդեն բացված էր։ Նրանց ձեռքերը կոշտացել էին, ճաքճքել, մկաններն այնպես էին ցավում, որ ամեն երեկո աշխատանքն ավարտելով, հազիվ էին քաշ գալիս մինչև գյուղ։ Կամաց-կամաց նրանք հասկացան, որ բերդ պեղելը երկու մարդու գործ չէ, եթե դրանք նույնիսկ այնպիսի կոփված ու ամուր տղաներ լինեին, ինչպիսին իրենք են։

— Գիտես ինչ, Հա՛յկ,— ասաց Վազգենը,— դու ի՞նչ ես կարծում, ինձ թվում է, որ մենք մեր ամբողջ կյանքում չենք բաժանվելու այս անիծյալ պատից։

— Երկա՛ր է, այո,— համաձայնեց Հայկը։

— Երկարն էլ խո՞սք է։

— Բա ի՞նչ անենք։

— Ահա թե ինչ, միևնույն է, պատը մենք ենք գտել, այդ էլ քիչ բան չէ։ Արի վաղն առավոտյան գնանք գյուղսովետի գրասենյակ, ամեն ինչ պատմենք և առաջարկենք, որ դպրոցի աշակերտներից

հնագիտական խմբակ կազմակերպվի բերդի պեղումները շարունակելու համար։

— Հը՞, լավ ես ասում,— համաձայնեց Հայկը,— ուրեմն բերդը մենք ենք գտել, չէ՞։

— Իհարկե, բա էլ ո՞վ։

Նոր որոշումն ուրախացրեց նրանց։ Նորից տարվեցին երազներով, մերթ պատկերացնում էին, թե ինչպես պիտի ընկերների գլուխն անցած գան բերդի պատերը բացելու, մերթ էլ երևակայում էին այն զարմանքն ու հիացմունքը, որ վաղն առավոտյան լսելու էին ամենքից։

— Ի՞նչ ես կարծում, թերթում կգրեն, չէ՞։

— Իհարկե, կգրեն, գուցե դեռ նկարներս էլ տպագրեն։

Ուրախ-ուրախ նրանք սկսեցին փոսից դուրս շպրտել վերջին մի քանի բահ հողը, որ գործը մաքուր լինի։

Այդ ժամանակ Հայկը բահը խրեց Վազգենի փորած հողի մեջ ու ոտքը բահի տակ տվեց։

— Վա՛յ,— հանկարծ ճչաց նա։

— Ի՞նչ պատահեց,— վախեցած հարցրեց Վազգենը։

Հայկը չպատասխանեց, նա արագությամբ բահը վար գցեց և չոքելով քիթը կպցրեց հողին։

— Ի՞նչ պատահեց, Հա՛յկ, բահը ոտի՞դ տվի՞ր։

Հայկը գլուխը բարձրացրեց, նրա աչքերը փայլում էին անսովոր պայծառությամբ։

— Նայի՛ր։

Նա բաց արեց աջ ձեռքի կծկված բռունցքը։ Նրա ափի մեջ, արևի ճառագայթների տակ մի վայրկյան բոցկլտաց ինչ-որ բան…

Այդ մի ոսկյա մատանի էր, կաղնի մեծությամբ փայլուն, ջինջ ակով…

***

Արևն արդեն թաքնվում էր անտառապատ բլրի ետևը։ Անտառային երեկոն դանդաղ տարածվում էր արևելքից։ Բլրի վրայից նշմարվում էին հեռու երկաթուղային կայարանի հատ ու կենտ էլեկտրական ճրագները։

Երկու ընկերները դեռևս կանգնած էին փոսի առաջ, նրանցից յուրաքանչյուրն արդեն տասնյակ անգամ սրտի թրթռոցով շոշափել էր արտասովոր մատանին։

— Հիմի ի՞նչ անենք,— տարակուսած հարցրեց Հայկը։

— Ի՞նչ պիտի անենք։



— Գնա՞նք գյուղսովետ, թե՞ չէ։

Վազգենը մտածմունքի մեջ ընկավ։

— Գիտես ինչ,— քիչ հետո ասաց նա,— ի՞նչ կարիք կա շտապելու։

— Բա մենք որոշել էինք։

— Ի՞նչ անենք, թե որոշել էինք, միևնույն է, մեր որոշման մասին ոչ ոք դեռ չգիտի, ամեն ինչ մեզնից է կախված։

Նրանք բլրից իջան, երբ արդեն երևում էին առաջին աստղերը։ Ամեն օրվա նման հոգնած էին, բայց հոգնածություն չէին զգում, թվում է, թե ուրախ էին, բայց միմյանց հետ խոսելու բան չէին կարողանում գտնել։

Երբ գյուղ հասան, փողոցներն արդեն դատարկ էին, ցերեկվա աշխատանքից հոգնած մարդիկ տներն էին մտել, միայն ակումբից լսվում էր ռադիոընդունիչի բարձր ձայնը. «Հաղորդում ենք զրույց գյուղատնտեսության աշխատողների համար»։

Մինչև տուն հասնելը նրանք կանգնում էին յուրաքանչյուր սյան առաջ և լապտերի լույսով նորից ու նորից նայում ոսկե առարկան։ Վերջապես Հայկենց դռան առաջ կիսախավարում մեկ էլ նայեցին և Հայկը մատանին գրպանը դրեց։

— Հա՛յկ։

— Հը՞։

— Տես հա, չկորցնես։

— Ինչո՞ւ պիտի կորցնեմ։

— Համ էլ ո՛չ ոքի ոչ մի խոսք…

— Հանգիստ կաց, չեմ ասի, բայց դու էլ…

***

Այդ օրից ծնունդ առավ հուզմունքի և ուրախության խառն զգացումը։ Առաջվա նման նրանք ամեն օր գաղտնի բարձրանում էին բլուրը, եռանդով փորում էին և շուտ-շուտ դիտում իրենց գանձը։ Մատանին պահում էին հերթով, մինչև որ վախեցան, թե կարող են կորցնել ու որոշեցին անտառում մի խուլ տեղ հատուկ թաքստոց պատրաստել մատանու և այն ամենի համար, որ նրանց կարծիքով շատ շուտով երևալու էին։ Գտան մի հարմար տեղ, որ և մոտ էր բերդատեղին, և ծածկված էր մասրենու անանցանելի թփուտներով։ Մի քանի ժամվա չարչարանքից հետո թաքստոցն արդեն պատրաստ էր։ Հենց այդտեղ էլ թողեցին լուցկու տուփի մեջ դրված մատանին։

Պեղումների ժամանակ միմյանց հետ չէին խոսում, բայց փորում էին այնպիսի աշխուժով, որ մի քանի օրում փոսի երկարությունը գրեթե կրկնապատկվեց։ Շուտով նկատեցին, որ պատը վերջացավ, բայց նրան ուղղահայաց երևաց մի այլ պատ, կարծես թե գտնվում էին մի հսկայական սենյակի ներսում։ Երկու պատերի հատման տեղում գորգի փտած կտորներ գտան, իսկ երբ ավելի խորացրին՝ բահը հանկարծ զրնգաց։ Երկուսով էլ չոքեցին և սկսեցին ուղղակի ձեռքերով հողը ետ տանել։ Հանկարծ նկատեցին մի գոգավոր սկավառակ, որ թաղված էր հողի մեջ՝ ուռուցիկ կողմը դեպի դուրս։ Երբ սկավառակը հանեցին, տեսան, որ ներսի կողմից երկու բռնակ ունի՝ իրարից բավական հեռու, իսկ եզրերին նկատվում էին փորագրված նախշեր, որ գրեթե տարալուծվել, չքացել էին խոնավ հողի մեջ երկար մնալուց։

— Սա ի՞նչ է,— զարմացավ Հայկը։

— Վահան է,— ասաց Վազգենը և նոր գտնված սկավառակը զգուշությամբ հենեց պատին։

Հաջորդ օրը դուրս եկավ մի պղնձե կլոր շրջանակ, որի վրա նույնպես նախշեր ու տառեր էին երևում։ Նրանք այդ էլ տեղափոխեցին թաքստոցը, մատանու և վահանի մոտ։ Հետո իրար հետևից երևացին մի փոքրիկ կճուճ, մի բուռ պսպղուն հուլունք, որ լցված էր մի փոքրիկ պղնձե տուփի մեջ, նետերի սրածայր գլուխներ, մի հատ կեռ



ժանգը կերած սուր և երեք հատ ոսկե օղակ, որ մատանու նման էին, բայց ավելի խոշոր։

Այսպես օր-օրին նրանց պահեստը հարստանում էր, բայց նոր գտնված առարկաները գնալով ավելի ու ավելի էին անհանգստացնում տղաներին։ Թվում էր, թե նրանք ավելի ուրախ կլինեին, եթե փոսից այլևս ոչինչ դուրս չգար։ Մինչև այժմ ոչ ոք չէր նկատել նրանց աշխատանքը, բայց մինչև այժմ նրանք առանձնապես չէին էլ մտահոգվում իրենց գործը թաքցնելու մասին, այժմ յուրաքանչյուր նոր գտնված առարկայի հետ մեծանում էր ճնշվածության զգացումը. իսկ լա՞վ են անում արդյոք, որ փորում են, իսկ գտնված իրերը թաքցնելու իրավունք ունե՞ն, իսկ ո՞ւմ են օրենքով պատկանում մատանին և մյուս ոսկյա իրերը, մտածում էին նրանք։ Իրար հետ չէին պայմանավորվել, բայց այժմ աշխատում էին

հերթով. մեկը փորում էր, իսկ մյուսը՝ հսկում։ Բայց բլրի մոտով ոչ ոք չէր անցնում։ Բլուրը գյուղից հեռու էր, իսկ ամառային եռուն աշխատանքների ժամանակ ոչ մեկի մտքով չէր անցնում թեև գալ գյուղը շրջապատող անտառապատ բլուրների վրա։

Օրերն անցնում էին, փոսը գնալով ընդարձակվում էր, ու դրա հետ աննկատելիորեն մեծանում էր անհանգստությունը։

Մի երեկո աշխատանքն ավարտելով, իրենց սովորության համաձայն նրանք գնացին թաքստարանը, նորից ուշադիր ու հետաքրքրությամբ դիտեցին իրենց հարստությունն ու հոգնած, անուրախ նստեցին մասրենու տակ։ Երկուսն էլ զգում էին, որ միմյանց ասելու բան ունեն, բայց երկուսն էլ չէին համարձակվում սկսել։ Վերջապես Հայկը գլուխը բարձրացրեց ու տնքաց.

— Է՜հ։

— Հը՞։

— Վազգե՛ն, էս բաներն ի՞նչ ենք անելու։

— Ի՞նչ ենք անելու,— կրկնեց Վազգենը, ինչ իմանամ, մնացածները հեչ, բանը...

Նա չվերջացրեց, բայց առանց այն էլ Հայկը հասկացավ ընկերոջ միտքը։

— Մենք դրանցով կարող ենք լուսանկարչական ապարատներ գնել, կամ ավելի լավ է հեծանիվ,— բարձրաձայն երազեց Վազգենը։

-- Ուրեմն ասում ես ծախե՞նք,— հանկարծ սիրտ անելով հարցրեց Հայկը։

Վազգենը չպատասխանեց։

— Դու գիտես,— շարունակեց Հայկը,— բայց մի տեսակ լավ չի դուրս գալիս։

— Ի՞նչը լավ չի դուրս գալիս,— Հայկի համար անակնկալ զայրացավ Վազգենը, մենք չե՞նք գտել։

— Մենք ենք գտել։

— Ուրեմն մերն է, էլ ի՞նչ ես նվում...

Բայց Վազգենը հանկարծ լռեց։ Մի պահ նա գլուխը կախ մտածում էր, հետո ընդոստ շարժումով վեր թռավ և զայրացած ասաց.

— Վատ կլինի՞, որ հեծանիվներ ունենանք։

— Իհարկե, լավ կլինի, ես ի՞նչ եմ ասում որ, ինչի՞ ես գոռում։

— Օ՜ֆ, ախր դու էլ մի բան ասա, է՜, հենց ձկան նման լռում ես, կամ հարցնում՝ «ի՞նչ անենք, ի՞նչ անենք»։

Հայկն այդ օրը չէր հասկանում ընկերոջը։ Նրան հանգստացնելու համար հաշտվողական տոնով ասաց.

— Լավ, հեծանիվ, թող լինի հեծանիվ։

— Ինչ հեծանիվ, գլուխ տարար,—նորից բարկացավ Վազգենը...



— Քեզնից մարդ բան չի հասկանա,— նեղացավ Հայկը,— ասում ես ծախենք, ծախենք, ի՞նչ ես ուզում։

— Ծախես, ոնց չէ, հորդ տանից ես բերել։

— Բա ասում էիր՝ մերն է։

— Ես ի՞նչ գիտեմ.. .

Այդպես էլ ոչինչ չկարողացան որոշել, տխուր վերադարձան գյուղ։



***

Հաջորդ օրը գյուղում հայտնի դարձավ, որ բլրի վրա անհայտ մարդիկ խոր ու երկար փոս են փորել։ Լուրը գյուղ բերեց անտառապահը, որ այդ կողմերից անցնելիս, նկատել էր փոսը։



Գյուղում մնացած մարդիկ հետաքրքրվեցին և խումբ-խումբ բարձրացան բլուրը։ Հայկն ու Վազգենն էլ սրտի թրթռոցով միացան իրենց հասակակիցներին։ Նրանք գնում էին կողք-կողքի, բայց ամբողջ ճանապարհին չէին համարձակվում խոսել ո՛չ իրար հետ, ո՛չ էլ ընկերների։ Երբ տեղ հասան, փոսի շուրջն արդեն մեծ բազմություն էր հավաքվել։ Մարդիկ հետաքրքրությամբ դիտում էին փոսի մեջ պարզորոշ գծագրվող պատերն ու զանազան ենթադրություններ անում։



— Գուցե որևէ արշավախումբ է աշխատում,— հարցրեց մեկը։

— Չէ՛, եթե այդպես լիներ մենք կիմանայինք, համ էլ որտե՞ղ են ապրում բանվորները, չէ՞ որ գյուղում վերջին ժամանակներս ոչ մի օտար մարդ չի եղել, իսկ շրջապատում ճամբարի որևէ հետք չկա։



— Իսկ ինչո՞ւ են փորել,— հետաքրքրվում էին այս ու այն կողմից։

— Այստեղ բերդ է եղել,— բացատրեց պատմության ուսուցիչը։

— Դրուստ ա,— հաստատեց Հովսեփ պա-





պը,— դրուստ ա, ես, որ հլա մի պտղունց տղա էի, էստեղ, հենց էս փոսի տեղում մի վարդապետ հող էր փորել տալի։

Եվ Հովսեփ պապը բոլորի համար կրկին պատմեց «ողորմած հոգի» վարդապետի պատմությունը։

Վազգենն ու Հայկը կանգնած էին շփոթված։ Նրանք մերթ ընդ մերթ իրար վրա անհանգիստ հայացքներ էին գցում, կարծես սաստում էին միմյանց, որ հանկարծ բերաններից խոսք չթռցնեն։

Մարդիկ դեռ երկար ժամանակ դիտում էին փոսը և հազար ու մի ենթադրություններ անում, իսկ երբ եկավ գյուղսովետի նախագահն ու ասաց, որ պեղումների մասին իրեն ոչինչ հայտնի չի եղել, մարդկանց տարակուսանքն ու հետաքրքրությունն ավելի ուժեղացավ.

— Ուրեմն, թաքուն են քանդել։

— Տե՛ս, է՜։

— Չէ, էստեղ մի բան կա...

Ասում էին այս ու այն կողմից։

Կեսօրին, երբ բազմությունը ցրվեց, Վազգենն ու Հայկը մյուս երեխաների հետ իջան գետը լողանալու։ Գետափին Հայկը Վազգենին մի կողմ տարավ ու հարցրեց.

— Լսիր, հիմա ի՞նչ ենք անելու։

— Մ՜ս, ոչ մի խոսք, հիմա արդեն խոստովանել չի կարելի։

— Ինչո՞ւ։

— Չլսեցի՞ր, թե ինչ ասաց նախագահը. առանց գյուղսովետին հայտնելու ոչ ոք պեղումներ կատարելու իրավունք չունի։

— Դե մենք ի՞նչ պեղումներ ենք արել որ, մի քիչ քանդեցինք...

— Քանդեցինք, քանդեցինք,— կրկնեց Վազգենը,— իսկ քո կարծիքով դա ի՞նչ է։

— Լա՛վ, լա՛վ, մի բարկանա, իսկ իրերն ի՞նչ ենք անելու։

— Իրերը թող գտնեն, մեզ ի՞նչ, ո՞վ պիտի իմանա, թե ինչ իրեր են, կամ ո՞ւմ թաքցրածը։

— Հա, իհարկե,— համաձայնեց Հայկը,— գուցե իսկի չգտնեն էլ...

— Գիտես ինչ,— ձայնը բարձրացրեց Վազգենը,— եկ այս գիշեր մատանին, ոսկի օղակներն ու հուլունքներն այնտեղից վերցնենք, իսկ մնացածը մեր ինչի՞ն է հարկավոր։

— Ասում ես վերցնե՞նք։

— Թե չես ուզում, հարկավոր չի։

Դե լավ, որ ասում ես, վերցնենք։

Նրանք պայմանավորվեցին, թե երեկոյան որ ժամին և որտեղ են հանդիպելու և միացան լողացողներին։

Նույն ժամանակ գյուղսովետի նախագահը հեռախոսով շրջկենտրոնին էր հայտնում տարօրինակ փոսի մասին։

(Շարունակելի)

# ԳԱԶԱՆԻԿԸ

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Աղբյուրի զմրուխտ ափին պառկել,
Գառներն են մուշ-մուշ լուռ մրափում,
Իսկ փոքրիկ Վանին խարույկ արել
Իր համար համեղ սունկ է եփում:

Օգնականն է նա իր մեծ եղբոր,
Շրջում են մեկտեղ միշտ սար ու ձոր:
Եղբայրը երբ որ մեկնում է գյուղ,
Հսկում է հոտը նա աներկյուղ:

Գայլերից Վանին չի վախենում,—
Եղբոր մահակն է կողքին դրված,
Բողարն է զգոն հոտին նայում՝
Դունչը թաթերին ճանգիստ պառկած:

Բայց ահա մոտիկ ժայռի տակից
Դուրս թռավ ինչ-որ փոքրիկ գազան.
Վանին որոշեց միանգամից,
Որ գայլի ձուտ է դա անպայման:

Եվ սրտում ինչ-որ սարսուռ զգաց,
Բայց սրտապնդեց իրեն նորից.
Չէ՞ որ մի փոքրիկ ճովիվ է նա,
Ինչո՞ւ վախենա այդ գայլուկից...

Իսկ գազանիկը կանգնել ճեռվում
Ու գառներին է անվախ նայում:

Վեր թռավ տեղից Վանին անա

Օգնության կանչեց իր բողարին,
Ու գոռգոռալով վազեց անահ,
Որ հեռու քշի չար գազանին:

Գայլուկն էլ սակայն հո հիմար չէր,
Պետք է շուտ գլխի ճարը տեսներ.
Խորամանկն իսկույն մի անցք գտավ
Ու սարսափահար այնտեղ մտավ:

— Սպասի՛ր, թե դու գայլի ձագ ես,
Չէ՞ որ տղա եմ ես էլ հովվի.
Թեկուզ և գետնի տակն էլ անցնես,
Մեկ է, իմ ձեռքից չես ազատվի:

Ու հիշեց Վանին, որ անտառում
Պատմում էր մի օր որսորդը հին,
Թե ինչպես բույնը ծուխ է լցնում
Ու դուրս է հանում գազաններին:

Վազ տվեց իսկույն, իր խարույկից
Մի քանի այրված փայտեր բերեց,
Շարեց անցքի դեմ ու գայլուկի
Բույնը նա խեղդող ծխով լցրեց:

Դուրս թռավ գազանն ահա բնից,
Բայց ո՞ւր կփախչի ճանկերից շան.
Բռնեց Բողարը, միանգամից
Խեղդեց ու մի կողմ նետեց նրան:

Վազ տվեց Վանին ու զարմանքով
Կանգ առավ հեռու մի երկու քայլ.—
Նա գլխի ընկավ ափսոսանքով,
Որ աղվես է դա և ոչ թե՝ գայլ:



## ԼՃԻ ՎՐԱ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Գ. ՉԱԼԻԿՅԱՆ

Լիճն է ահա արևի տակ
Փռվել այնպես կապույտ,
Ալիքները ժիր ու ճստակ
Պար են բռնել անփույթ:

Արեգակի շողերն են վառ
Ընկել խորքը լճի,
Հեռվում լեռներ, կանաչ անտառ,
Վերում երկինք վճիտ:

Կրծքով ջուրն է ճեղքում անվերջ
Մի գեղեցիկ մակույկ.
Ու նստած են մակույկի մեջ
Պիոներներն առույգ:

Ջուրն են նետվում մերթ գլխիվայր,
Ձկների պես աշխույժ,
Նրանք դարձած արևավառ,
Դարձած եռանդ ու ուժ:

Մերթ խմբովին երգ են ասում,
Գովքն են անում ամռան,
Հնչյունները ափ են վազում
Ալիքների նման:

Ամրանում են, պայծառանում,
Հանգստանում խաղաղ,
Հոգնությունն է ջուրը տանում
Ալիքներով իր պաղ:

Երբ օրերը դպրոցական
Նրանց կանչեն նորից,
Կարոտագին նրանք կգան
Դարձած եռանդ ու լիցք:

Այժմ լիճն է արևի տակ
Հայելու պես ցոլում,
Պիոներական երգն է ճստակ
Երջանկորեն ծորում:




Ա. ՇԱՀԻՆՅԱՆ          Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

## ՕՏՎԵՐՆԵՐԻ ԵՏԵՎԻՑ

Գիշեր է։ Շրջապատը խաղաղ է ու հանգիստ։ Հեռվում գյուղի տների լուսամուտներից աչքով են անում էլեկտրական լամպերը։ Ճամբարը վաղուց թաղվել է խոր քնի մեջ։ Չի քնել միայն գառամյալ անտառը։ Քունը փախցրած հսկայի նման, դեռ տնքում է նա ու հորանջում։ Սառը քամին օրորում է ծառերի սլացիկ կատարները՝ ներդաշնակ շրշյուն տարածելով ամենուրեք։

Գիշերապահները հերթով ստուգում են վրանները։ Ամեն ինչ կարգին է. բոլորն իրենց տեղերումն են։

Վահեն չի հիշում, թե որքան ժամանակ էր անցել, երբ փակեց աչքերը։ Նա որոշել էր ինչ կերպ էլ լինի արթուն մնալ. չնայած Վաչիկն ու Յոլակը դրժելով պայմանը վաղուց քնել էին։ Քնել էին նաև մյուս տղաները՝ անտեղյակ այս ամենին։

Վահեն սկզբում երկար ժամանակ մաքառում էր, որպեսզի չքնի, բայց քունը աստիճանաբար հաղթեց նրան։ Կոպերը ծանրացան, և նա այդպես էլ չզգաց, թե ինչպես մի քաղցր թմրություն համակեց իրեն։ Առաջին բանը եղավ այն, որ արթնանալուն պես բարձրացրեց գլուխն ու նայեց Համոյի մահճակալին։ Նա դեռ անկողնում էր։ Նավթով վառվող լապտերը, որ մինչ այդ հողհմարր՝ մեջ էր՝ անդոր թրթռաց ու մարեց։ Դրսից ինչ-որ թռչնի խուլ կռինչ լսվեց, որը կրկնվեց մի քանի անգամ։ Վահեն հանկարծ մթության մեջ նկատեց Համոյի ուրվագիծը, որն արագ դուրս սողաց մահճակալի վրայից։ Բացվեց վրանի մուտքը։ Ստվերը դուրս սահեց։

— Վեր կացեք, տղերք, գնաց...

Տղաներն այդ լսելուն պես իսկույն ցած թռան իրենց մահճակալներից և սկսեցին արագ հագնըվել։ Դեռ նոր էին վրանից դուրս եկել, երբ անսպասելիորեն նրանց առջև կանգնեց հերթապահ ջոկատավարը, որին տղաները առավոտյան պատմել էին ամեն ինչ։

— Համոն նորից դուրս գնաց, դուք տեսա՞ք,— հևասպառ ասաց Վահեն։

— Տեսա, տղաներ, ես ամեն ինչ տեսա, եկեք իմ ետևից, տեսնենք, թե ինչո՞վ կլուծվի այս հանելուկը,— ասաց ջոկատավարը։

— Ահա նա,— շշնջաց Վաչիկը և մատնացույց արեց դեպի գյուղը տանող նեղլիկ արահետը։

— Կկորցնենք հետքը, գնանք,— շտապեցրեց Վահեն։

Նա դեռ խոսքը չէր ավարտել, երբ ջոկատավարը հազիվ լսելի ձայնով շշնջաց.

— Սպասե՛ք, սա ի՞նչ է, բանից պարզվում է, որ Յոլակի ենթադրած լուսնոտը ընկեր էլ ունի...

Տղաները նրա խոսքերից ոչինչ չհասկանալով նայեցին ցույց տված ուղղությամբ և ինչ՝ ճանապարհի եզրի թփուտների ետևից հայտնվեց ինչ-որ մեկը։ Նա մոտեցավ Համոյին։ Գիշերային լռության մեջ լսվեց նրանց խոսակցությունը։

— Ինչո՞ւ այսքան ուշացար։

— Քնով էի ընկել։

— Իսկ ես էնքան կռնչացի։

— Լապտերը վերցրե՞լ ես։

— Վա՜յ, էլի մոռացա։

— Շշմած, հիմի ի՞նչ պետք է անենք։

Խոսակցությունը դադարեց։ Ստվերներն առաջ շարժվեցին։ Ջոկատավարն ու տղաները զգույշ



*) Սկիզբը տես «Պիոներ» № 7, 1956 թ.

գնացին նրանց ետևից։ Քիչ հետո ստվերները հասան գյուղի ծայրին գտնվող քարակոփ պարսպով շրջապատված մի փոքրիկ այգու։ Հետապնդողները տեսան, թե ինչպես նրանք ճարպկորեն ցատկեցին այգու կիսով չափ փլված պարսպի վրայից և աներևութացան, ձուլվելով գիշերային խավարին։

— Ահա թե ինչ լուսնոտներ են սրանք, ա՛յ թե ովքեր են կողոպտում այգիները,— բարկացած ասաց ջոկատավարը։

## «ԱՍՏՂԱԳԵՏՆԵՐԸ»

Խավարն ավելի թանձրացավ։ Ջոկատավարն ու տղաները չնկատեցին, թե ինչպես հետզհետե խտացող ամպերի գորշ ակոսներով երկնակամարը սկսեց կնճռոտվել։ Շրջապատի անդորրը ընդհատվեց մերթ ընդ մերթ կրկնվող դղրդյունով։ Սպիտակ լույսի մի շերտ փայլատակեց անտառի վրա և մի ակնթարթ լուսավորելով մութ շրջապատը՝ չքացավ։



Մթագնած երկնքից սկսեց բարակ անձրև մաղել։

Հանկարծ շան հաչոց լսվեց։ Այգու փլված պարսպի ետևից հայտնվեցին նրանց ստվերները։ Նրանք ցած թռան ցանկապատի վրայից և իրենց ետևից գլորելով խարխլված քարերը, վազեցին դեպի ձորաբերանի լքված վանքը, որն այնքան էլ հեռու չէր ճամբարից։ Նրանց ետևից սլանում էր մի բրդոտ գամփռ։

— Վա՜յ, այն ո՞ւր են գնում,— զարմացած հարցրեց Ցոլակը։

— Կարծես վանքն են մտնում,— պատասխանեց Վաչիկը։

«Ի՞նչ գործ ունեն նրանք այդ ավերակների մեջ», ահա թե ինչ էր մտածում հետապնդողներից յուրաքանչյուրը։

Ստվերները վանքի մոտ մի պահ կանգ առան, վառեցին լապտերը և ապա ներս մտան կիսաքանդ կամարի տակով։ Ջոկատավարն ու տղաները գնացին նրանց ետևից։ Ջոկատավարը վառեց գրպանի լապտերիկը և սկսեց ուշադրությամբ զննել կիսավեր վանքի մութ խորշերը։

— Այ քեզ բա՜ն։ Այս ո՞ւր չքացան։ Կարծես գետնի տակ անցան,— շշնջաց ջոկատավարը։

Ցոլակի բորբոքված երևակայությունը այստեղ նորից սկսեց գործել։ Նա դողդողացող ձայնով ասաց.

— Գուցե բոլորովին էլ այն չէ, ինչ մենք տեսել ենք, հը՞ տղերք։ Գուցե նրանք երբեք էլ այստեղ չեն եղել, այլ ուղղակի մեր աչքին է երևացել։ Այ, տատս ասում էր...

Նրա բառերը հանկարծ խեղդվեցին կոկորդում։ Զանգակատան գմբեթից տարօրինակ թխկթխկոցներ լսվեցին։ Այդ անհասկանալի թխկթխկոցներից սարսափած Ցոլակը քիչ մնաց ճչար, բայց դրա փոխարեն, վախից ամուր գրկեց Վահեին։

Հենց այդ պահին ինչ-որ խոսակցություն հասավ նրանց ականջին։

— Ինչ ես մեխը ծուռտիկ խփում, դե դու բոլորովին ծռեցիր...

— Քիթս ես մտնում, դրա համար էլ մուրճը չեմ կարողանում ազատ շարժել։

— Վա՛յ, վա՛յ... մուրը աչքերիս մեջ թափեցիր։

Մի պահ լռություն տիրեց։

— Նրանք են... բայց հետաքրքիր է, ինչ են անում վերևում,— ասաց ջոկատավարը։

— Եկեք բարձրանանք,— առաջարկեց Վահեն։

— Միայն թե, տղաներ, առանց աղմուկի,— զգուշացրեց ջոկատավարը և ձեռքի լապտերիկով լուսավորեց զանգակատուն տանող ոլորապտույտ



աստիճանները։ Տղաները զգույշ՝ ոտքի ծայրերի վրա բարձրացան մամռոտած քարե աստիճաններով։ Զանգակատան դռան արանքից, որը փոքր ինչ բաց էր, աղոտ լույս երևաց։ Ներսից եկող խոսակցությունը այս անգամ ավելի պարզ լսվեց.

— Դե, շուտ սղոցը բեր, ինչ ես բաղի նման շրթրթում,— բղավեց մեկը։

— Իսկ դու մի գոռա, բերում եմ էլի,— բողոքեց մյուսը։

— Դմբո,— միթե սա սղոց է... Չէ, ինչպես տեսնում եմ քեզանից ոչ մի աստղագետ էլ դուրս չի գա։

Ձայները լռեցին։ Խորհրդավոր լռության մեջ լսվեց սղոցի միալար խռխռոցը։

— Վաղը ճամբարի բացումն է։ Այ թե կզարմանան տղաները... Ճիշտ չէ՞, Համո։ Նրանք բոլորովին կապշեն, երբ տեսնեն մեր այս հրաշագործությունը։ Մեր աստղադիտարանը հանդիսավոր ձևով կնվիրենք երկրորդ հերթի ճամբարականներին։ Վանքի պատին ցուցանակ կկպցնենք ու վրան կգրենք. «Սիրելի ճամբարականներ, նայեք, ուսումնասիրեցեք տիեզերքը և իմացած եղեք, որ այս հրաշալի աստղադիտարանը նվիրում են ձեզ, ձեր երկու անծանոթ ընկերները՝ Համոն ու Կարենը»։

Այդ պահին մի սուր ճռոց լսվեց, և մեկը դրմփյունով կարծես ընկավ վերևից։

— Ո՜ւֆ, կողքս ջարդվեց, չէ, եղբա՛յր, քեզ հետ աշխատել բոլորովին չի լինի... Երազելու ժամանակ ես գտել։ Հազար անգամ ասացի, որ բռնիր մեջքիցս։

Ներսից շան հաչոց լսվեց, որին հաջորդեց նրանցից մեկի շփոթված ձայնը.

— Ջուլբարսը հաչում է... դրսում կարծես մարդիկ կան։

Տղաներն այլևս չկարողացան համբերել։ Արագ բացեցին դուռը և ջոկատավարի հետ ներս մտան։ Նրանց առջև բացվեց հետևյալ տեսարանը։ Հնացած լապտերը, որ դրված էր հատակին՝ թույլ կերպով լուսավորում էր զանգակատան ներսը։ Պատի մոտ, հանկարծակիի եկած՝ կանգնել էր Համոն, իսկ նրա կողքին՝ մրոտված դեմքով մի տղա։ Տղաները անմիջապես ճանաչեցին նրան։ Նրանց մոտ կանգնել էր բրդոտ գամփռը, որը կարծես թե ուզում էր պաշտպանել տղաներին, գիշերային հարձակվողներից։ Այս ու այնտեղ թափված էին երկաթյա տարբեր մասեր, ապակու կտորներ, զանազան գործիքներ։ Պատերին փակցված էին արևի, լուսնի, աստղերի և այլ մոլորակների նկարներ։ Իսկ զանգակատան ծակված գմբեթից դեպի դուրս էր ցցվել վառարանի հնացած ծխահան խողովակը, որի ներսի ծայրին մի մեծ ոսպնյակաձև ապակի էր փայլում։

Ջոկատավարը, որ մինչ այդ լուռ ժպտում էր՝ իր շուրջը թափված առարկաներին նայելով, ասաց.

— Ահա թե ինչով են զբաղված մեր գիշերային փախստականները,— և ապա դառնալով Համոյին ու նրա կողքին կանգնած տղային, ավելացրեց,— մենք ամեն ինչ լսեցինք, այդ լավ է, տղերք, որ դուք ցանկանում եք սեփական ձեռքերով աստղադիտարան կառուցել, բայց ինչո՞ւ այս հիանալի նախաձեռնությունը գաղտնի կատարել, գողեգող, խախտելով ճամբարի կարգ ու կանոնը։ Մինչդեռ ձեր ամբողջ ջոկատով կարող էիք կարճ ժամանակում կառուցել և աշխատանքն էլ ավելի հետաքրքիր ու արդյունավետ կլիներ։ Դուք գիտեք, որ մեր ավագ ջոկատավարը աստղաբաշխության ուսուցիչ է։ Այ, կարող էիք խնդրել նրան, և նա շատ բաներում կօգներ ձեզ...

— Դե, գիտեք, մենք նրա համար ենք...

— Գիտեմ, գիտեմ,— ընդհատեց Համոյին ջոկատավարը,— ամեն ինչ պարզ է, դուք ցանկացել եք ճամբարի բացման առթիվ սյուրպրիզ անել բոլորիս... Բայց տղաներ, գործը՝ գործ, կարգապահությունը՝ կարգապահություն։

Համոյի կողքին կանգնած տղան, որի մրոտված դեմքի վրա փայլում էին խաժ աչքերը՝ ցանկացավ մի բան ասել, բայց լռեց և բավարարվեց

*նրանով, որ ոտքով թեթևակի հրեց իրենից քիչ հեռու կծկված շանը։*

*— Դու ո՞ր ջոկատից ես, տղա՛,— ծիծաղը հազիվ զսպելով հարցրեց ջոկատավարը։*

*— Սա Կարենն է, իր պապիկի հետ նա վերջերս է ամառանոց եկել։ Նրա պապիկը... ինչպես են ասում, է՜... դե էն որ լեռներն են ուսումնասիրում։*

*— Լավ, իսկ ինչ գործ ունեիք այգում...*

*— Դա մեր այգին է, լապտերն էինք մոռացել, մտանք վերցնելու,— քթի տակ փնթփնթաց Կարենը և թևքով մաքրեց մրոտված երեսը։*

*— Դե լավ, տղաներ, արդեն ուշ է,— հարկավոր է տուն վերադառնալ,— ասաց ջոկատավարը, նայելով ձեռքի ժամացույցին։*

*Համոն այս խոսքի վրա մի տխուր հայացք գցեց շուրջը, ապա ցույց տալով գմբեթից դուրս ցցված վառարանի ծխահան խողովակը, ափսոսանքով հարցրեց.*

*— Բա աստղադիտարա՞նը...*

*— Աստղադիտարանը, տղաներ, այնուամենայնիվ կկառուցվի։*

*Տղաները վերցրին լապտերը և ցած իջան զանգակատան քարե աստիճաններով։*

*Անձրևը դադարել էր, երկնքում լողում էր լուսնի արծաթագույն սկավառակը։*



# 102 ՕՐ ԼԱՍՏԻ ՎՐԱ

Ա. ՕՀԱՆՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*1946 թվականի կեսերին էր։ Նյու-Յորքի Ազգագրական թանգարանում վեճի էին բռնվել երկու գիտնական։*

*— Երբե՛ք, երբե՛ք,— ասում էր ծերունի գիտնականը՝ Հարավային Ամերիկայից ոչ մի ժողովուրդ չի կարող անցնել խաղաղ օվկիանոսը և բնակություն հաստատել Պոլինեզիայի կղզիներում։*

*— Իսկ ես համոզված եմ, որ Պերուի հին բնակիչները 1500 տարի առաջ նավել են դեպի Պոլինեզիա և բնակություն հաստատել այնտեղ,— ասում էր երիտասարդ նորվեգիացի ազգագրագետ Տոր Խեյերդալը։*

*— Այդ անհնարին էր, որովհետև պերուացիները նավեր չունեին։ Ընդհակառակը Ինդոնեզիայի բնակիչները նավեր ունեին և հրաշալի ծովագնացներ էին։ Անկասկած, Պոլինեզիայի բնակիչների նախնիները եկել են ոչ թե Պերուից, այլ Ինդոնեզիայից,— պնդում էր ծերունի գիտնականը։*

*— Ճիշտ է, Պերուի հին բնակիչները նավեր չունեին, բայց ունեին հրաշալի լաստեր։ Ես իմ տեսակետն ապացուցելու համար կկառուցեմ այդպիսի լաստ և օվկիանոսի վրայով կուղևորվեմ Պերուից մինչև Պոլինեզիա։ Ես կապացուցեմ, որ դա հնարավոր է,— ասաց Խեյերդալը և ոտքի կանգնեց։*

*— Դուք կամ կատակ եք անում, կամ, թող ների ինձ ասել՝ խելագարվել եք։ Ո՞վ կհավատա, որ դուք լաստի վրա օվկիանոսի կատաղի ալիքներով կանցնեք ութ հազար կիլոմետր տարածություն։ Խելքի եկեք։*

*— Կտեսնեք,— ասաց Խեյերդալը և հարգանքով հրաժեշտ տվեց ամերիկացի ծերունի գիտնականին։*

***

*Խեյերդալը հինգ ընկերների հետ, Պերուի Կալյաո նավահանգստում սկսեց լաստի կառուցումը։ Կանեփաթելի պարաններով իրար կապեցին 10—14 մետր երկարությամբ 9 գերան, լաստի վրա բամբուկից կառուցվեց մի փոքր խուց, որտեղ վեց հոգի հազիվ էին տեղավորվում։ Խուցի առաջ երկու ամուր փայտ կանգնեցրին, որոնց ծայրերը միացնելով դարձրին կայմ։ Կայմին ամրացրին մի*





հասարակ, քառակուսի առագաստ, և լաստը պատրաստ էր։

Լաստին տվին «Կոն Տիկի» անունը։ Դա պերուացիների նախնիների նշանավոր ցեղապետներից մեկի անունն էր ։

Տոր Խեյերդալը ուժեղ կամքի տեր մարդ էր։ Նա ասաց. «Եթե անգամ լաստը քանդվի, գերանները բաժան-բաժան լինեն, միևնույն է, մենք կգերադասենք ամեն մեկս մի գերանի վրա հասնել Պոլինեզիա, քան թե վերադառնալ»։

«Կոն Տիկիի» ուղևորները վերցրին սննդամթերքի չորս ամսվա պաշար։ Մթերքը ծովի աղաջրից պաշտպանելու համար, փակեցին սովարաթղթե տուփերի մեջ, վերցրին նաև 1100 լիտր ջուր, մեծ քանակությամբ կոկոսյան ընկույզ և այլ մրգեր։ Ընկերներից մեկը, որ շատ ընթերցասեր էր, իր հետ վերցրեց 73 գիրք։

Լաստը չուներ ոչ մի շարժիչ մեքենա։ Ապա ինչպե՞ս պետք է նա անցներ 4300 ծովային մղոն տարածություն։

«Կոն Տիկիի» նավորդներին քաջ հայտնի էր, որ Հարավային Ամերիկայի արևմտյան ափերով՝ հարավից դեպի հյուսիս գնում է Պերուական ծովային հոսանքը, որը հասարակածին չհասած թեքվում է արևմուտք և հասնում մինչև Պոլինեզիա։ Պասսատ քամիները այդտեղ նույնպես շարունակ փչում են դեպի արևմուտք։

Եվ ահա լաստը պետք է քշվեր ծովային հոսանքի ու քամիների ուժով դեպի արևմուտք, օրական անցնելով 80—100 կիլոմետր տարածություն։

Հասավ ուղևորվելու ժամը։ 1947 թվականի ապրիլի 28-ին «Կոն Տիկիի» խիզախները, իսկ ճանապարհողների կարծիքով խելագարները, Պերուի Կալյաո նավահանգստից սկսեցին իրենց չտեսնըված ճանապարհորդությունը։ Հրաժեշտի ժամին ճանապարհորդներից մեկը նավորդներին նվիրեց մի թութակ։ Այսպիսով, «Կոն Տիկիի» ուղևորների թիվը դարձավ յոթ։

Քիչ անց՝ խաղաղ օվկիանոսն սկսեց ալեկոծվել։ Հետզհետե փոթորիկը սաստկացավ։ 15—20 մետր բարձրությամբ ալիքներ գալիս էին «Կոն Տիկիի» կողմը, բարձրացնում նրան իրենց կատարի վրա, գլորում ջրային անդունդների և փրփուրների մեջ, նորից բարձրացնում, նորից գլորում և այդպես անվերջ... Հուժկու ալիքները հեղեղում էին լաստը, շուռ տալիս քթով դեպի ետ, պոկում առագաստը, սրբում ամեն բան, ինչ որ ամուր կապած չէր։ Խեղճ թութակը այդպես զոհ գնաց օվկիանոսի կատաղի ալիքների հորձանքին։

Մարդիկ գերաններին ու թոկերին կառչած, ընչակտուր սպասում էին օվկիանոսի հանդարտվելուն։ Նրանց կամքը անսասան էր։ Նրանք դիմանում էին ամեն մի արհավիրքի, հավատում հաջող ելքին և նույնիսկ կատակում ամենամեծ վտանգի ժամանակ։

Անցնում էին օրեր, շաբաթներ։ Լաստը սլանում էր դեպի արևմուտք՝ անզուսպ տարերքին հանձնած իր բախտը։

Խաղաղ ժամանակ հիասքանչ տեսարաններ էին բացվում նավորդների աչքերի առաջ։ Նրանք դիտում էին գեղեցիկ արևածագն ու մայրամուտը։ Ձկները ծովային բյուրավոր լուսատու մանր



օրգանիզմներ — պլանկտոններ, ֆոսֆորափայլով լուսավորում էին օվկիանոսի ջրերը։ Երբ նավորդները ցանցով որսում էին պլանկտոնը և թափում տախտակամածի վրա՝ հրեղեն շեղջերը փայլում էին գույնզգույն թանկագին քարերի պես։

Թռչող ձկները թռչում անցնում էին լաստի վրայով ու սուզվում ջրի մեջ։

Արդեն անցել էր երկու ամիս։ Հոսանքը անընդհատ քշում էր լաստը դեպի արևմուտք։ Գիշերները ծովային աճարկու գազանները՝ շնաձկները, կատվաձկները հմայված «Կոն Տիկիի» լապտերի լույսով, մոտենում էին լաստին, հոտոտում, ուղեկցում նրան ու անհետանում։

Մի օր ցերեկով լաստին մոտեցավ մի ծովային գազան։ Ահռելի երախը բացած, գիշատիչ աչքերը փայլեցնելով նա սկսեց շարժել վիթխարի ծնոտները։ Նավորդներից մեկը, սարսափած նրա տեսքից, սկսեց խելագարի պես ծիծաղել ու գոռալ։

Պարզվեց, որ դա կետային շնաձուկ է, այսինքն ամենամեծ շնաձուկը և ամենամեծ ձուկը աշխարհում։ Նրա երկարությունն է քսան մետր, քաշը՝ տասնհինգ տոննա, իսկ երախի մեջ ունի երեք հազար սուր ատամ։

Մեկ ժամ լողաց այդ հրեշը «Կոն Տիկիի» կողքով, բայց մարդկանց 24 ժամ թվաց։ Նավորդները լարված սպասում էին, թե ի՞նչ է լինելու այդ սարսափելի հանդիպման վերջը։

Հարմար վայրկյան որսալով նավորդները եռաժանիով խփեցին հրեշի գլխին, նա սուզվեց և անհայտացավ ջրի մեջ։

Ջրու պես խորը շնչելով, մոտենում էին լաստին հսկա կետերը և վիշապաձկները։ Բավական էր, որ կետը մի փոքր խփեր իր պոչով, և լաստը կկործանվեր։

Մի անգամ լաստի տակը մտավ մի հսկա կետ՝ 35 մետր երկարությամբ։ Թվում էր, թե լաստը թամբի պես նստեց կետի մեջքին։ Կետի պոչը երևում էր լաստի հետևից, իսկ գլուխը՝ առջևից։ Այս փորձանքից էլ «Կոն Տիկին» փրկվեց անվնաս։ Երեք ամիս «Կոն Տիկին» ծովային հոսանքով ու քամիներով գնում էր դեպի արևմուտք։

Ցամաքը երազի նման էին հիշում մարդիկ։ Եվ ահա 93 օրից հետո նավորդները ծուխ են տեսնում, զգում են ցամաքի սքանչելի հոտը։ Երևում է Լուսամոտու արշիպելագի կղզիներից մեկը։

97-րդ օրը կոնտիկցիները բոլորովին մոտենում են Պոլինեզիայի Անգատաու կղզուն։ Տեղի բնակիչները նավակներով հասնում են լաստի մոտ, խոսում նավորդների հետ, բայց ուժեղ հոսանքը քշում է լաստը։ Նավորդներին չի հաջողվում ափ իջնել։

Անգատաու կղզու մոտով անցնելուց հետո լաստը սկսեց արագ սլանալ ուղիղ դեպի կորալյին ժայռոտ խութերը, որտեղ եռում էր ջուրը։ Պարզ էր, որ «Կոն Տիկին» անխուսափելի կերպով պետք է զարնվի ժայռերին ու ջարդուփշուր լինի։

Ճանապարհորդները լաստի օրագիրը, լուսանկարները և բոլոր փաստաթղթերը տեղավորում են անջրանցիկ պարկերի մեջ ու կապում։

Նրանք որոշում են ինչ էլ որ լինի, մնալ լաստի վրա՝ անգամ խութերին զարնվելու պահին։

Ահա «Կոն Տիկին» պտտվում է հետնամասով դեպի խութերը։ Ռադիստը խելագարի պես չըխ-



շրխկացնում է ռադիոհաղորդիչի բռնակը՝ հայտնելով աշխարհին, որ հոսանքը «Կոն Տիկին» շպրտում է Ռարոիա խութերի վրա։ Լսվում է խեցրդալի վերջին հրամանը՝ «Պինդ բռնեցեք, պինդ բռնեցեք»։ Բոլորը պատրաստ կանգնած են, ամեն մեկը մի բանից ամուր բռնած։

«Կոն Տիկիի» սլացքն ուժեղանում է։ Լաստը ճռռում է, դողում մարդկանց ոտների տակ։ Նա մերթ թառած փրփրաբաշ ալիքների ուսերին՝ թռչում է օդի մեջ, մերթ սուզվում ջրերի տակ։ Ալիքների շառաչն ու լաստի դղրդյունը խլացնում են մարդկանց։ Կանաչ ջրերի ու փրփուրների միջից նավորդները տեսնում են, թե ինչպես իրենց անօգնական լաստը զարկվում է փրփուրների մեջ կարմրին տվող կորալային ժայռերին։

Վերջապես մի անգամ ևս ահռելի ուժով «Կոն Տիկին» զարնվեց ժայռերին ու ջախջախվեց, դարձավ գերանների մի խղճուկ կույտ։ Սարսափելի արհավիրքի մեջ իրենց սառնասրտությունն ու գիտակցությունը հերոսաբար պահպանած նավորդներից մի քանիսը շպրտվեցին խութերի վրա, մյուսներն իրենք ցատկեցին ու բռնեցին խութերից։ Ինչպիսի ուրախություն պատեց նրանց, երբ տեսան, որ բոլորն էլ ողջ են մնացել, թեև բզկտված ու վիրավորված։

Առանց ժամանակ կորցնելու նրանք սկսեցին ջրից որսալ սննդամթերքների մնացորդները, իրերը և դարսել ջրի տակից ցցված մի մեծ խութի կատարին։

Խութերից ոչ հեռու երևում էր մի հրաշալի, անմարդաբնակ կղզի, պատած կոկոսյան արմավենիներով ու փարթամ կանաչով։

Ուժասպառ մարդիկ, ամեն մեկը մի բան շալակած, սկսեցին խութերի վրայով շարժվել դեպի կղզին։ Ահա և կղզին՝ իր հասուն ընկույզներով, սպիտակափունջ, հոտավետ ծաղիկներով, մարդկանցից արագ խուսափող մողեսներով ու կարմիր խեցգետիններով։

Հեքիաթային ճանապարհորդությունն ավարտված էր։ Այդ օրը, երբ լաստը շպրտվեց Տաիթի կղզիների Ռարոիա խութերի վրա, 1947 թվականի օգոստոսի 7-ն էր։

Անցել էր 102 օր՝ այն օրից, երբ «Կոն Տիկին» ճանապարհվեց Կալյաո նավահանգստից։

«Կոն Տիկիի» նավորդները լաստի վրա անցան մոտ ութ հազար կիլոմետր, այսինքն երկու անգամ ավելի ճանապարհ, քան Քրիստափոր Կոլումբոսը՝ դեպի Ամերիկա կատարած իր առաջին ճանապարհորդության ժամանակ։ Այս խիզախ ճանապարհորդությունն իր գիտական կանխատեսությամբ համարվում է ամենանշանավոր ճանապարհորդություններից մեկը։

***

Նավորդները անմարդաբնակ կղզում մի քանի օր ապրեցին Ռոբինզոնի պես։ Նրանք ուտում էին ձուկ, խեցգետիններ, խմում աշխարհում ամենաքանչելի, զովացուցիչ խմիչքը — թարմ կոկոսյան ընկույզի սառը, քաղցր կաթը։ Քնում էին արմավենու տերևներից շինած անկողնում։

Մի քանի օր անց հարևան կղզու բնակիչները նկատելով «Կոն Տիկիի» նավորդների խարույկը, նավակներով գալիս են այնտեղ, նրանց տեղափոխում իրենց կղզին և մեծ խնջույքներ, պարեր կազմակերպում նրանց պատվին։

Կոնտիկցիները գնում են Տաիթի կղզին, իսկ այնտեղից ճանապարհվում են Նորվեգիա։



Արդեն պատմական դարձած «Կոն Տիկի» լաստը նույնպես տարվում է Նորվեգիա և պահվում Օսլո քաղաքի զբոսայգում, «Ֆրամ» նավի հետ միասին։ Այս նավով հռչակավոր աշխարհագետ Ֆրիտյոֆ Նանսենը 1893—96 թթ. ուղևորություն կատարեց հյուսիսային բևեռ հասնելու նպատակով։

Այսպես՝ Տոր Խեյերդալը իր չտեսնված խիզախ ճանապարհորդությամբ ապացուցեց, որ հնարավոր է լաստով Հարավային Ամերիկայից նավել մինչև Պոլինեզիա, որ պերուացիների նախնիները կարող էին իրենց լաստերով հասնել մինչև այնտեղ։ Սակայն գիտությունն ավելի շատ փաստեր ունի հօգուտ այն տեսակետի, որ մարդիկ եկել են Պոլինեզիա՝ Ասիայից, Ինդոնեզիայից, և ոչ թե Պերուից։ Այս վերջին տեսակետի օգտին են խոսում պոլինեզիացիների լեզուն, կենցաղը, տնային գործածական իրերը, նրանց կողմից մշակվող գյուղատնտեսական կուլտուրաները։



# ՆԱՄԱԿ

Ն. ՍԱԿՈՆՍԿԱՅԱ

Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Սիրելի մայրիկ,
Ես լավ եմ ապրում,
Ծովափ եմ գնում,
Խեցի հավաքում:

Ունեմ ես այստեղ
Շատ նոր ընկերներ,
Երգում ենք մեկտեղ
Նորանոր երգեր:

Իսկ ջուրը ծովի,
Աղի է, մայրի՛կ,
Ծփում է մեղմիկ:
Ու կանաչալիք:

Ծովի հատակին
Ավազ է մանրիկ,
Այստեղ լինեիր,
Լողայիր, մայրի՛կ:

Ձախ կողմը նայես՝
Սալորն է հասնում,
Վերև թե նայես՝
Աստղերն են փայլում:

Սալորն այստեղի՝
Համով է մերից,
Աստղերն այստեղի
Պայծառ են մերից:

Արփին Ղրիմի
Կրակ է թափում,
Բանկոնս հիմի
Իսկի չեմ հագնում:

Ճերմակ էի ես
Առաջ ձյունի պես,
Հիմա սևացել
Ու նեգր եմ դարձել:

Մեծացել եմ ես,
Գամ, չես ճանաչի:
Վազում եմ այնպես,
Քամին չի հասնի:

Ինձ նորություններ
Գրիր նամակում,
Հասե՞լ է բալը,
Կոլխոզի այգում:

Գրիր, ցորենը
Դեռ չե՞ն հավաքել,
Սարյակիս բույնը
Ծառից չե՞ք պոկել:

Պատասխան գրիր
Ինձ շուտով, մայրի՛կ,
Ջերմ բարևներով
Քո որդի՝ Ալիկ:

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ

# ԻՄ ԳՆԴԱԿԸ

Վ. ՏԱԼՅԱՆ Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



Ջա՜ն, իմ գնդակ, իմ գնդակ,
Կանաչ, կարմիր, կապուտակ,
Թռիր երկինք, իջիր ցած՝
Զալոն մնա զարմացած:
Գլոր-գլոր գլորվիր,
Թփերի մեջ մոլորվիր.
Փիսոն գտնի, խտըտի,
Խունջիկ-մունջիկ պտըտի...
Ա՜խ, փի՛ս... մի օր ինչ արեց...
Թաթով խաղաց, գլորեց,
Տարավ, տարավ, քեզ տարավ,
Ցեխը գցեց՝ կանգ առավ.
Նայեց, մռռաց ու չանչեց,
— Միա՜ու,— ասաց՝ քեզ կանչեց...
Իսկ ես հասա հանեցի,
Մաքուր-մաքուր լվացի:



Մի անգամ էլ, իմ գնդակ,
Թռար ընկար դու գետակ.
Տմբտմբալով լողացիր,
Բայց մրսեցիր՝ դողացիր:
— Վա՜յ, օգնեցե՛ք,— գոռացի.
Եկան՝ ընկեր, դրացի,
Ազատեցինք քեզ իսկույն,
Իմ սիրունիկ գույնզգույն:
Թե չէ, գիտե՞ս, կտանեեր,
Հեռու երկիր կհանեեր.
Լաց կլիներ իմ փիսոն,
— Հաֆ-հաֆ,— կասեր մեր Զալոն:
Ջա՜ն, իմ գնդակ, իմ գնդակ,
Կանաչ, կարմիր, կապուտակ,
Թռիր երկինք, իջիր ցած՝
Զալոն հաշի զարմացած:

## ԵՐԲ ՏԱՆԸ ՉԻ ՄՌԱՆԸ...

(Ժողովրդական)

Մի իրիկուն մայր կատուն
Ուզեց գնալ քրոջ տուն,
Հենց որ փակեց դուռ ու հաշտ,
Ճամփա ընկավ դեպի դաշտ,
Մկներն իսկույն ելան դուրս,
Իրար տվին աչքալույս:
— Զգույշ,— ասաց ծեր մուկը,—
Կտրեք ձեռաց աղմուկը,
Մեկ էլ տեսար գող կատուն
Թաքուն եկավ, մտավ տուն...
Բայց ի՜նչ կատու, ի՜նչ գազան,
Մկներն այնքան բա՜ն տեսան,
Որ ահ ու դող մոռացած,
Ձագուկներին շուրջն առած,
Ուրախացան, ծափ տվին,
— Բարի ճամփա մեր կատվին...
Երբ տանը չի մռանը՝
Մուկն է խաղում դռանը:

Մշակումը՝ Հ. ՍԵՎԱՆԻ



# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՍՊԱՐՏԱԿԻԱԴԱՆ

Ս. ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆ

(Մարմնամարզիկների հավաքական թիմի մարզիչ)

Անցնելով Երևանի Աբովյան փողոցով, Ֆիզկուլտուրայի կենտրոնական տան մոտ ձեր ուշադրությունը կգրավի սպորտային լուսանկարների մի ցուցափեղկ: Այնտեղ դուք կտեսնեք մեր լավագույն մարմնամարզիկներին, ծանրքամարտիկներին, ըմբիշներին, ալպինիստներին, ֆուտբոլիստներին և շատ ուրիշ սպորտսմենների: Դուք նրանց կտեսնեք ցուցադրական ելույթներում, մըրցումների ժամանակ, կինոէկրանների վրա, երբ նրանք մեր երկրի հավաքական թիմերի կազմում սուր պայքարի մեջ են գտնվում արտասահմանյան սպորտսմենների հետ:

Դուք նայում եք մեր սպորտսմեններին և հիանում նրանց խիզախությամբ, ճարպկությամբ, ուժով, գեղեցիկ շարժումներով:

Ձեզանից շատերն, անշուշտ, ձգտում են դառնալ այդպիսին: Եթե ուզում եք, անպայման կըհասնեք ձեր նպատակին: Բայց պետք է իմանալ, որ ամեն ինչ կախված է ձեզանից:

Դրա համար պետք է ճիշտ կերպով կպչել գործին և համբերատար ու սիստեմատիկ աշխատել՝ բազմակողմանի ֆիզիկական պատրաստություն ձեռք բերելու համար: Չէ՞ որ լավ թեթև ատլետ չես կարող դառնալ, եթե ոտքերի, կրծքավանդակի, ձեռքերի և մեջքի մկանները թույլ են զարգացած: Չես կարող դառնալ լավ շտանգիստ, ըմբիշ, ծանրքամարտիկ, լողորդ, եթե մարմինդ չես զարգացնում ներդաշնակորեն:

Այս ամենը ապահովում է մարմնամարզությունը: Բոլոր սպորտսմենները, նույնիսկ կարգայիններն ու վարպետները իրենց սպորտային ցուցանիշները բարձրացնելու համար զբաղվում են մարմնամարզությամբ:

Մարմնամարզության ամենագրավիչ տեսակներից մեկը սպորտային մարմնամարզությունն է, որով շատ են տարվում մեր պատանիներն ու երիտասարդները:

Ձեզանից ո՞վ չի լսել Հրանտ Շահինյանի և Ալբերտ Ազարյանի անունները: Նրանք այժմ սպորտի այդ ձևի ամենափայլուն ներկայացուցիչներն են: Երկուսն էլ նվաճել են սպորտի վաստակավոր վարպետի, Սովետական Միության և աշխարհի չեմպիոնի պատվավոր կոչումները: Այդպիսի պատվի արժանանալու համար նրանք տոկուն և համառ աշխատանք են կատարել, անընդհատ բարձրացնելով իրենց վարպետությունը, միաժամանակ զարգացնելով այնպիսի հատկություններ, ինչպես օրինակ՝ կամքի ուժը, դժվարությունների հաղթահարումը, հաջողություններով չգոռոզանալը և բազմաթիվ այլ հատկություններ:

1954 թվականի ամառն էր: Սովետական մի շարք սպորտսմենների հետ Ալբերտ Ազարյանը մեկնել էր Հռոմ՝ մասնակցելու աշխարհի առաջնության 13-րդ մրցումներին: Այդ օրերին Հռոմում շատ շոգ էր, մինչև 50 աստիճան: Բացի այդ, զանազան երկրներից այդտեղ էին հավաքվել հազարավոր սպորտասեր մարդիկ: Մի կողմից շոգը և մյուս կողմից հուզմունքը անհանգստությամբ էին համակել Ազարյանին, բայց չէին ընկճել նրան: Ալբերտը պատվով դուրս եկավ այդ մըրցումներից, շահեց աշխարհի չեմպիոնի կոչումը և պարգևատրվեց ոսկե մեդալով:

Ալբերտ Ազարյանից հետո հաղթանակ նվա-

ճեց Հրանտ Շահինյանը: Սովետական մարմնամարզիկները Իտալիայից հայրենիք վերադարձան փայլուն հաղթանակներով. 35 ոսկե մեդալից 30-ը նվաճել էին նրանք:

Սպորտսմենը չի բավարարվում ձեռք բերած հաղթանակներով. նա ձգտում է ավելի բարձր ցուցանիշների: Ա. Ազարյանը և Հ. Շահինյանը ինչքան շատ են մասնակցել մրցումների ու դուրս եկել հաղթանակներով, այնքան ավելի խստապահանջ են դարձել իրենց նկատմամբ և շարունակել են մարզվել ավելի կանոնավոր ու արդյունավետ:



Սպորտի վարպետ Ա. Ազարյանը վարժություններ կատարելիս:
Լուսանկար՝ Վ. Սևոյանի

Մարմնամարզությունը սպորտի այնպիսի ձև է, որ մշակում է բնավորությունը, մարդուն դարձնելով ավելի զուսպ, համեստ և կուլտուրական: Դրա վառ օրինակը Լեոնիդ Զաքարյանն է, որը մեր լավագույն մարմնամարզիկներից մեկն է: Լեոնիդը թեև մի տարով փոքր է Ալբերտից, բայց նա մարմնամարզությամբ ավելի վաղ է զբաղվել: Դեռևս 1946 թվականին Լեոնիդի անունը հայտնի դարձավ Սովետական Միության բոլոր դպրոցականներին: 1951 թվականից Լեոնիդը երկրի մարմնամարզիկների հավաքական թիմերի կազմում մասնակցում է աշխարհի առաջնության մրցումներին: Նա եղել է Չեխոսլովակիայում, Հունգարիայում, Ֆինլանդիայում և այլ վայրերում, որտեղ Սովետական Միության թիմը միշտ գրավել է առաջին տեղերը:

Լեոնիդի մրցակիցը դեռևս մանկությունից եղել է Զավեն Մաթևոսյանը: Պատանիների ռեսպուբլիկական մրցումներում հաճախ առաջին տեղի համար պայքար է գնացել ընկերների միջև: Եվ այսպես, շատ տարիների ընթացքում սուր ու հետաքրքիր պայքարով նրանք հերթով նվաճում էին ռեսպուբլիկայի չեմպիոնի կոչումը: Այդ պայքարը շարունակվում է նաև այժմ: Սպորտի վարպետ Զավեն Մաթևոսյանը նույնպես համարվում է Սովետական Միության հավաքական թիմերի անդամ: Նրան էլ շատ անգամ է վիճակվել արտասահմանում պաշտպանել սովետական մարմնամարզիկների պատիվը: Ամենուրեք, որտեղ նա ելույթներ է ունեցել՝ Հունգարիայում, Ռումինիայում, Գերմանիայում, Չեխոսլովակիայում և ուրիշ երկրներում, աչքի է ընկել հաղթանակի նկատմամբ տենեցած ամուր կամքով:

Սպորտի վարպետ Վաչիկ Հակոբյանը մեկ տարով փոքր էր Լեոնիդից ու Զավենից և ավելի ուշ է զբաղվել մարմնամարզությամբ: Բայց նա իր համառությամբ ու աշխատասիրությամբ նույնպես հասավ աչքի ընկնող նվաճումների: Վաչիկն ուժեղ մարմնամարզիկ է: Նրան հաջողվել է մի քանի անգամ նվաճել մարմնամարզության գծով ռեսպուբլիկայի բացարձակ չեմպիոնի կոչում և մի քանի տարի շարունակ լինել «Բուրեվեստնիկ» սպորտ կամավոր ընկերության գծով Սովետական Միության բացարձակ չեմպիոն:

Արդեն լայն ճանաչում ու հռչակ ստացած մարմնամարզիկների կողքին հանդես են գալիս նորերը, ավելի երիտասարդները, որոնք մրցման մեջ են մտնում վարպետների հետ:

Շատ երիտասարդ, ընդունակ և արագ աճող մարմնամարզիկ է Ալբերտ Ազնավուրյանը: Երկու տարի առաջ, առաջին կարգի մարմնամարզիկների հետ նա նվաճեց Սովետական Միության չեմպիոնի կոչում: Իսկ մի տարի հետո առաջին անգամ ելույթ ունեցավ վարպետների ծրագրով և դարձավ մեր վարպետների արժանավոր մրցակիցը, նվաճելով ռեսպուբլիկայի չեմպիոնի կոչում: 1955 թվականի նոյեմբերին Ազնավուրյանը հանձնեց սպորտի վարպետի նորմանները: Ստանալով Սովետական Միության սպորտի վարպետի կրծքանշանը, նա չհանգստացավ դրանով և այժմ ամեն կերպ բարձրացնում է իր վարպետությունը, որպեսզի դառնա իր նախորդների արժանավոր հերթափոխը:

Սպորտի վարպետի կոչում ստացել են նաև մեր աղջիկները: Լարիսա Ազատյանի, Դեզդեմոնա Մկրտչյանի և շատ ուրիշների անունները վաղուց հայտնի են սպորտասեր հասարակայնությանը:

Այս օրերին մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում տեղի է ունենում սպորտային մեծ տոն՝ Սովետական Միության ժողովուրդների սպարտակիադան։ Մրցումներին մասնակցում են միութենական ռեսպուբլիկաների տասնյակ հազարավոր սպորտսմեններ։ Սպարտակիադայի ծրագրում մտնում են սպորտի բոլոր ձևերը։ Վազքուղիներում ու մարմնամարզության դահլիճներում, ֆուտբոլային հրապարակներում ու թենիսի խաղադաշտերում, բռնցքամարտերի ռինգերում ու լողարաններում մեր սպորտսմենները ցուցադրում են իրենց նվաճումները։

Սպարտակիադայում մեծ հաջողությամբ հանդես են գալիս նաև Հայաստանի մարմնամարզիկները։

# ՍՊՈՐՏԱՅԻՆ ԵՐԹ

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

Բյուր դրոշներն են նորից փողփողում,
Ծածանվում թերև քամուց վաղորդյան,
Վազքուղիներով շարքերն են անցնում.
Մեծ տոն է ուժի և գեղեցկության։

Շարքերն անվերջ են։ Գնում են նրանք,
Իրենց կորովը ու կամքն են տանում,
Եվ դրոշների այս ծփանքի տակ
Նոր հաղթանակներ երկրին խոստանում։

Այդպես են նրանք՝ առույգ, առնացի,
Գործի մեջ, կյանքում միշտ միասնական,
Նրանց շարքերով հզոր, գեղեցիկ
Հպարտ է երկիրն իմ սովետական։

# ԿԱՊՈՒՅՏ ԼՃԻ ԱՓԻՆ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Հաղթահարելով վերելքի դժվարությունները՝ առաջինը լեռան գագաթը հասավ Աստղիկը։ Նա բարձրացավ պղնձագույն ժայռի վրա, որի շուրջը, զմրուխտ կանաչի մեջ, օրորվում, նազում էին լեռնային կակաչները։

— Ընկեր Ստեփանյա՛ն, Սևա՜նը, Սևա՜նը,— վեր-վեր թռչելով բացականչեց Աստղիկը։

Հրճվանքից փայլում էին նրա խոշոր, թուխ աչքերը, և խորացել էին ցորնագույն դեմքի փոսիկները։

Մեկ-երկու րոպե չանցած՝ Աստղիկի շուրջը բոլորվեցին հայրենի երկիրն ուսումնասիրող պատանիներն ու աղջիկները, աշխարհագրության դասատու ընկեր Ստեփանյանի հետ միասին։ Նրանք հմայված կանգնեցին բարձունքում։ Ներքևում փռված էր կապույտ ծովակը՝ շրջապատված զմրուխտ լեռներով։ Լճի հյուսիսային ափին հսկա, թևատարած էլեկտրալարերը լեռներով ու ձորերով ձգվում էին մինչև հորիզոն։ Դրանք Սևանի կապույտ ջրերի ուժը տանում են քաղաք ու գյուղ, լույսով ողողում մեր լեռնաշխարհը։

Դեռ հեռվից էքսկուրսանտները քրտնած դեմքերին զգում են վիթխարի, կապույտ թասի դուրեկան զովը և անկուշտ շնչում կայտառացնող օդը։

Հանկարծ, հանդիսավոր լռության մեջ լսվում է Աստղիկի ձայնը.

Սևանի կապույտ ջրեր,
Կարծես թե նազում եք դուք,
Կարծես թե ափերն ի վեր
Կարկաչով վազում եք դուք։
Ձեր շուրջը սարեր կան ծեր,
Նրանց ցոլքն է ձեր սրտում,
Կարծես թե հազարագույն
Բյուրեղյա վազում եք դուք...

Երբ Աստղիկը վերջացրեց արտասանությունը, պոռթկացին ծափերն ու կեցցեները, ապա բոլորը նստեցին կանաչի վրա՝ խմբի ղեկավար ընկեր Ստեփանյանի զրույցը լսելու։

— Ահա և Սևանա լիճը, ընկերնե՛ր, որը այնքա՜ն են երգել մեր բանաստեղծները,— սկսեց նա։

— Ընկեր Ստեփանյան, այդ բարձրության վրա ինչպե՞ս է գոյացել վիթխարի լիճը,— հարցրեց Հրանտը, որ ուզում էր ամեն ինչի մասին բոլորից շուտ իմանալ։

Աշխարհագրության երիտասարդ դասատուն, որ հիացած դիտում էր կապույտ գույնի բոլոր երանգավորումներով փայլփլող լիճը, հայացքը դարձրեց իր մոտ նստած աղջիկներին ու տղաներին։

— Սևանի մասին շատ բան է գրվել,— ասաց նա։ Լճի ուսումնասիրությունն սկսվեց 20-րդ դարում։ Այժմ Սևանը աշխարհի ամենաբազմակողմանի ուսումնասիրված լիճն է։ Գիտական բազմաթիվ էքսպեդիցիաներ են աշխատել, որոնք կատարել են երկրաբանական, հիդրոլոգիական, կլիմայական, ձկնաբանական և այլ հետազոտություններ, կազմել են լճի հատակի քարտեզը։ Միայն լճի հատակի քարտեզը հանելու համար կատարվել են ջրի խորությունների ավելի քան վաթսուն հազար չափում։

րածված էր Շվեյցարիայում, Իտալիայում, Ֆրանսիայում, Անգլիայում, Շվեդիայում և այլ երկրներում։ Բայց մեր օրերին էլ լճերի վրա ցցաշեն տնակներով բնակավայրեր կան Ասիայում, Հարավային Ամերիկայում ու Աֆրիկայում։

— Ես պատկերացնում եմ, թե ինչպես են բարբարոս մարդիկ ապրել ցցատների մեջ, ինչպես են պաշտպանվել գազաններից ու թշնամիներից,— ասաց Աստղիկը։

— Բայց այդ մասին Վախտանգ Անանյանը ոչինչ չի գրել «Սևանի ափին» գրքում,— կասկածանքով միջամտեց Հրանտը։

— Սևանա լճում,— Հրանտին դիմելով շարունակեց Ստեփանյանը,— պալաֆիտ նկատված է 1849 թվականին։ Միայն դրանից հինգ տարի հետո՝ 1854 թվականին Շվեյցարիայում, Ցյուրիխի



Լճի այս տարածությունը մի ժամանակ ծաղկառատ ու փարթամ հովիտ է եղել։ Հետո գործել են երկրի ներքին ուժերը, ժայթքել է հրաբուխը, շիկացած լավաները փակել են ներկա Հրազդան գետի (հնում ասել են՝ Հուրաստան) հունը, և ջուրը ելք չգտնելով, սկսել է լճանալ հովտի մեջ ու անընդհատ բարձրանալով՝ նվաճել նորանոր ցամաքներ։ Մեր օրերում էլ տեղի են ունենում նման երևույթներ։

— Իսկ Սևանա լճի հատակին բնակավայրեր չե՞ն մնացել,— նորից հարց տվեց Հրանտը։

— Իհարկե, մնացել են։ Սևանը այնպիսի հնագիտական գաղտնիքներ ունի, որոնք դեռ նոր են բացվում մեր առաջ։ Հնում խիտ բնակչություն է եղել այստեղ։ Քարանձավային մարդիկ ապրել են լճից ձուկ և անտառներից կենդանիներ որսալով։ Մեծ Սևանի վրա եղել են ցցաշեն ավաններ։ Գազաններից և հարձակվող թշնամիներից պաշտպանվելու համար մարդիկ ապրել են լճի վրա կառուցված ցցատների մեջ, որոնք հնագետները պալաֆիտ են կոչում։ Ջրային նման բնակությունը հնում՝ նեոլիտի դարաշրջանում, շատ տա-

լճի վրա հայտնաբերվեց ցցաշեն բնակություն։ Դա հնագետների համար գյուտ էր։ Նրանք գտան, որ հնագույն մարդկանց համար պալաֆիտը եղել է գազաններից, հակառակորդ ցեղերից պաշտպանվելու և ձկնորսությամբ պարապելու նպատակահարմար միջոց։ Դրանից հետո ամբողջ Եվրոպայում հայտնաբերվեցին նման բնակության վայրեր։

— Ուրեմն, ընկեր Ստեփանյան, պալաֆիտներ մեզ մոտ ավելի շո՞ւտ են հայտնաբերվել, քան Եվրոպայում,— ասաց Ժենյան։

— Այո, Ժենյա, հնագետ Բայերնը Սևանի շրջկենտրոնի մոտ՝ լճի մեջ 1849 թվականին տեսել է երկու շարք գերաններ, որոնք մի ժամանակ իրենց վրա կրել են երկու խումբ ցցաշեն լճային տնակներ կամ բնակավայրեր միացնող մի կամուրջ։ Հնագետ Ե. Լալայանը լճի արևելյան կողմում՝ Գիլլի մոտ, ջրի մակերևույթից մեկ մետր խորը, նկատել է ցցված չորս գերան։ Սևանի ավազանում պեղումներ կատարելիս՝ Հայաստանի պատմական թանգարանի աշխատակից Հ. Մնացականյանը ևս 1952 թվականին լճի մեջ նկատել

է նման գերաններ, որոնք կրային կեղևով են պատած եղել ու արդեն քարացած։ Նշանակում է Սևանա լճի պալաֆիտները սկիզբ են առնում շատ հնուց։ Մեծ Սևանը դարեր շարունակ ծանծաղ է եղել և այդ հեշտացրել է պալաֆիտների կառուցման գործը։

— Իսկ պալաֆիտների գերանները ո՞րտեղից են ճարել, ընկեր Ստեփանյան։ Չէ՞ որ Սևանի ամբողջ շրջապատը լերկ ժայռեր են,— խմբակավարին հարցրեց բլոկնոտում գրանցումներ կատարող Ժենյան։

— Ճիշտ է, Ժենյա, այսօր Սևանի շուրջը անտառներ չկան, բայց հնում լիճը օղակված է եղել հաստաբուն ծառերի մթին անտառներով, որտեղ աճել են նաև պտղատու ծառեր։ Ահա թե ինչպես են իմացել այդ բոլորը։



Այդ գաղտնիքը հնագետներն են բացել, որոնք Սևանի ավազանում պեղումների ժամանակ հայտնաբերել են անտառային կզաքիսի, գորշուկի կմախքներ, իսկ լճի միջից ձկնորսի ուռկանը հաճախ դուրս է բերել եղջերուի եղջյուրներ։ Տարիներ առաջ, Հրազդան գետի ակունքը փորելիս զուբրի գանգ են գտել։ Այդ կենդանիներն ապրել են մթին անտառներում։ Դեռ 1952 թվականին Սևանում, լճի տակից նոր ազատված հողամասում գտան մի կաղին։ Դա նույնպես ցույց էր տալիս, որ Սևանի շրջակա անտառներում կզաքիսներ են եղել։ Հետագայում ոչնչացվել են այդ դարավոր, խիտ անտառները։

Լիճը ծովի մակերևույթից բարձր է 1916 մետր։ Միալ է, երբ ասում են, թե Սևանը ամենամեծն է բարձրադիր լճերից և ամենաբարձրադիրն է մեծ լճերից։ Աշխարհում չորս լիճ կա Սևանից բարձր ու մեծ, որոնցից երկուսը գտնվում են Հարավային Ամերիկայում՝ երկուսը՝ Տիբեթում։ Հարավ-ամերիկյան Տիտիկակա լճի բարձրությունը 3812 մետր է, մակերեսը՝ 6900 քառակուսի կիլոմետր, այսինքն Սևանից կրկնակի բարձր ու քառակի ծավալուն։ Հարավ-ամերիկյան մյուս լիճը Պոոպոն է, որն ունի 3694 մետր բարձրություն և 2530 քառակուսի կիլոմետր մակերես։ Միայն թե այս վիթխարի լիճը խորություն չունի՝ ընդամենը երեք մետր է ամենախոր տեղը։ Աշխարհի ամենաբարձր լիճը Տիբեթում գտնվող Թենղրի — Նոր լիճն է, որը նշանակում է երկնային լիճ։ Դրա բարձրությունը 4630 մետր է, այսինքն՝ մեր փոքր Մասիսից էլ 600 մետր բարձր, իսկ մակերեսը հավասար է 2500 քառակուսի կիլոմետրի։ Տիբեթի երկրորդ մեծ լիճը, Կուկու-Նորն է. ունի 3145 մետր բարձրություն և 4800 քառակուսի կիլոմետր մակերես։



Ընկեր Ստեփանյանի հետաքրքիր պատմությունը լսելուց հետո հայրենի երկիրն ուսումնասիրող աղջիկներն ու տղաները նեղ հողաշերտով ուղևորվեցին Սևանի երբեմնի կղզին, որ այժմ արդեն թերակղզի էր դարձել։ Նրանք որոշել էին գիշերել թերակղզու հանգստյան տանը և հաջորդ օրը շարունակել իրենց էքսկուրսիան լճի շուրջը։

## ԳՈՂԻ ՊԱՏԻԺԸ

ՀՈԲՈՍ ԱՊԵՐ

Գարնան մի զով իրիկուն
Գորտը, մուկը ու կատուն,
Հանդիպեցին մեկ մեկու.
Գորտը ասաց՝ լողանանք,
Մուկը ասաց՝ գողանանք:
Կատուն մեկնեց ճանկը սուր
Մկանն ասաց՝ պարտքս տուր:
— Ո՞վ է քեզ պարտք,— մուկն ասաց:
Կատուն նայեց զայրացած.
— Ասա ի՞նչ է, մոռացա՞ր,
Որ մեր հացը գողացար:
— Հացը քեզ ի՞նչ, ա՛յ կատու,
Հացի տե՞ր ես դարձել դու:
— Մի համարիր, ա՛յ անբան,
Դու չգիտե՞ս, որ այս տան
Հացին ես եմ պահապան:
Ինքս տեսա, որ տարար.
Չհասցրի, շուտ թռար,
Թե չէ հենց նույն վայրկյանին,
Կհանեի քո հոգին:
Ու հետ դարձավ նա գորտին
Ժիր ու աշխույժ լողորդին.
— Դու ճիշտն ասա, ազնիվ գորտ:
Գորտն ասաց,— ղորթ է, ղորթ...
— Լավ լսեցի՛ր, ականջով,—
Ասաց կատուն բարձրաձայն,
Բռնեց մկանն սուր ճանկով
Արեց արդար դատաստան...:

## ՄՆԱՍ ԲԱՐՈՎ

Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ



Մնաք բարով, նեղ փողոցներ,
Մնաս բարով մեր հին տուն,
Բնակարան ենք ստացել
Նորակառույց այս շենքում:

Երեք սենյակ ունի նա լայն,
Ուր պարտեզից վարդաբույր
Ներս են բերում հովերն ամռան
Ծաղկանց բուրմունքը մաքուր:

Չէի կարող քայլել ազատ
Ես մեր նեղլիկ սենյակում,
Այստեղ Հայկի արջուկն անգամ
Ունի հարմար մի անկյուն:

Բարձր-բարձր պատշգամբից
Ողջ քաղաքն եմ տեսնում ես,
Ու ժպտացող արևն անբիծ
Մեր հարևանն է կարծես:

Մնաք բարով, նեղ փողոցներ,
Մնաս բարով, մեր հին տուն,
Բնակարան ենք ստացել
Նորակառույց այս շենքում:



## ԻՎԱՆ ՖՐԱՆԿՈ

*Մի օր դարբին Յակովը տուն բերեց ուկրաինական մեծ բանաստեղծ Տարաս Շևչենկոյի բանաստեղծությունների ժողովածուն։ Իվանը՝ դարբնի փոքրիկ տղան հափշտակված սկսեց կարդալ այդ գիրքը։ Մեծ Կոբզարի երգերում նա տեսնում էր իր Հայրենիքի ստրկացված վիճակը, հողի աշխատավորների ցավալի կյանքը։*

*Դրոգոբիչի գիմնազիան ավարտելուց հետո Ֆրանկոն ընդունվում է Լվովի համալսարանը։ Ոգեշնչված ռուս մեծ գրողների ու մտածողների առաջադիմական գաղափարներով, Ֆրանկոն երազում է ազատագրված տեսնել իր Հայրենիքը։ Նա ձգտում էր լուսավորել ժողովրդին, ոտքի կանգնեցնել նրան, դրա համար էլ 1877 թվականին Իվան Ֆրանկոյին բանտարկում են։ Նա շարունակում է իր բոցավառ գրչով պայքարել։ Ֆրանկոն իր «Բորիսլավը ծիծաղում է», «Բորիսլավյան պատմվածքներ» և այլ երկերում պատկերում է կապիտալիստ շահագործողների դաժան կերպարները, բանվորների կյանքի սարսափելի պայմանները։*

*1905 թվականի ռևոլյուցիայի ազդեցությամբ Ֆրանկոն բարձր ոգևորությամբ գրում է «Մովսես» պոեմը, որի մեջ երգում է ժողովրդի ըմբոստությունը բռնապետական կարգերի դեմ։*

*Ֆրանկոն իր ժամանակի ամենախոշոր մարդկանցից մեկն էր։ Նա և՛ առաջնակարգ բանաստեղծ էր, և՛ փիլիսոփա, և՛ տնտեսագետ, և՛ պատմաբան, և՛ հրապարակախոս, և՛ դրամատուրգ, և՛ արվեստի տեսաբան։ Նա թողել է գրական խոշոր ժառանգություն՝ 4637 ստեղծագործություն։ Նրա «Թառամած տերևներ» բանաստեղծությունների ժողովածուն, համաշխարհային գեղարվեստական գրականության ընտիր էջերի թվին է պատկանում։*

*Աշխարհի առաջավոր մարդիկ, Սովետական Միության ժողովուրդների հետ միասին, Խաղաղության միջազգային կոմիտեի որոշմամբ, սիրով և հարգանքով տոնում են Իվան Ֆրանկոյի ծննդյան հարյուր տարին։*

Ց. ՇՈՂԵՆՑ

# ԻՆՉՊԵՍ ԵՆ ՍԿԻԶԲ ԱՌԵԼ ՕԼԻՄՊԻԱԿԱՆ ԽԱ՛ՂԵՐԸ



*Ա. ԿՐԱՍԻԼՇՉԻԿՈՎ*

*Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ*

Հարցրեք առաջին իսկ պատահած սպորտսմենին.

— Ի՞նչ տարի է այս տարին։

Նա ձեզ անպայման կպատասխանի.

— Օլիմպիական տարի է։

Եվ իսկապես. 1956 թվականը, ինչպես ամեն մի նահանջ տարի, օլիմպիական խաղերի տարի է, համաշխարհային խոշորագույն սպորտային մրցությունների տարի։

Օլիմպիական տարին արդեն սկսվել է։ Դուք, իհարկե, գիտեք, որ մի քանի ամիս առաջ իտալական Ալպերի ձյունապատ լեռներում տեղի ունեցավ օլիմպիական խաղերի ձմեռային մասը՝ «սպիտակ օլիմպիադան», որի ժամանակ սովետական սպորտսմենները մի շարք փայլուն հաղթանակներ տարան։ Բայց ամենագլխավորը դեռ առջևումն է. նոյեմբերի վերջին Ավստրալիայում սկսվելու են սպորտի ամառային տեսակների օլիմպիական խաղերը։ Այդ խաղերն սկսվելու են հինգ աշխարհամասերի սպորտսմենների հանդիսավոր երթով։ Սովորության համաձայն երթի վերջում ընթանալու են «տանտերերի» սպորտսմենները, այս անգամ՝ ավստրալիացիները։ Բայց, անկախ նրանից, թե որ երկրում են հանդիպում օլիմպիական սպորտսմենները, երթի առջևից միշտ ընթանում են Հունաստանի պատվիրակները։

Ինչո՞ւ է այդպես։ Ահա դրա մասին է, որ այստեղ պիտի խոսենք։

Երեք հազար տարի սրանից առաջ չքնաղ Հելլադայում ներկայիս հույների հեռավոր նախնիները անցկացրին առաջին օլիմպիադան։

Հելլենները գնահատում էին գեղեցկությունը, և նրանց մոտ գեղեցիկ էին համարվում ամրապինդ, ճարպիկ ու առողջ մարդիկ։ Իրենց երեխաներին նրանք ամենափոքր հասակից մարզում էին ֆիզիկական վարժություններով, ուժի ու արագության մրցություններ էին կազմակերպում, բաց օդում աշխույժ խաղեր էին սարքում նրանց համար։



Այսինքն՝ մեր խոսքով ասած՝ վարժեցնում էին ֆիզիկական կուլտուրայի և սպորտի:

Բայց սպորտն աներևակայելի է առանց մրցությունների, առանց առաջնության համար պայքարելու, դրա համար էլ Հելլադայի փոքրիկ պետություններում կազմակերպվում էին սպորտային տոներ:

Հետո սովորություն դարձավ մրցություններ կազմակերպել ամբողջ Հելլադայի ատլետների մասնակցությամբ: Այդ մրցությունները տեղի էին ունենում Օլիմպ լեռան ստորոտում, հելլենական Էլիդե փոքրիկ պետությունում, դրա համար էլ կոչվում էին Օլիմպիական խաղեր:

Հելլենները շատ էին սիրում հավատալ, թե իրենց աստվածներն ու հերոսները մասնակցում են մարդկանց կյանքին: Օլիմպիական խաղերի մասին ևս Հելլադայում գոյություն ուներ մի առասպել: Ահա այդ առասպելը:

Պատգամախոսը Էնոմայոս թագավորի համար գուշակել էր, թե նա կզոհվի իր Հիպոդամիա դստեր ամուսնու ձեռքով: Եվ ահա Էնոմայոսը հայտարարեց, թե իր դուստրը կտա միայն նրան, ով իրեն կհաղթի կառարշավի մրցության մեջ: Բայց վայ փեսացուին, եթե նա պարտվեց: Նրան մահ է սպասում: Հիպոդամիան այնքան էր չքնաղ, որ նույնիսկ մահվան վախը ետ չէր պահում երիտասարդներին: Բայց նրանք բոլորն էլ զոհվում էին դաժան Էնոմայոսի ձեռքով, որովհետև կառք վարելու արվեստում նրան հավասարը չկար, և նրա ձիերն էլ ավելի արագընթաց էին, քան ամենաարագ քամին: Եվ ահա մի օր թագավորի մոտ է գալիս Զևսի թոռ Պելոպսը:

— Դու իմ դուստրն ստանա՞լ ես ուզում,— հեգնական ժպիտով ասաց նրան Էնոմայոսը:— Բայց մի՞թե չգիտես, թե քանի հերոս է իր գլուխը ցած դրել նրա համար:

— Ինձ չի սարսափեցնում զոհված հերոսների բախտը,— պատասխանեց Պելոպսը:

Նա մրցության դուրս եկավ Էնոմայոսի հետ, և այդ մրցությունում դաժան թագավորը զոհվեց, ջարդուփշուր լինելով իր կառքի հետ:

Պելոպսն ամուսնացավ Հիպոդամիայի հետ և Էնոմայոսի տեղը թագավոր դարձավ: Ըստ առասպելի՝ Պելոպսի թոռ Հերակլեսը ի հիշատակ իր պապի հաղթանակի՝ սովորություն դարձրեց Օլիմպիական խաղերը:

Բայց սա առասպել է: Պատմական ավանդությունը բոլորովին այլ կերպ է բացատրում Օլիմպիական խաղերի ծագումը: Մոտ երեք հազար տարի սրանից առաջ, հելլենների միջև եղած անընդհատ երկպառակություններից ու պատերազմներից անհանգստացած՝ Հելլադայի թագավոր Իփիտոսը Սպարտայի տեր Լիկուրգոսին առաջարկում է պայմանագիր կնքել, որ դրանից հետո «մարդկանց մեծությունը հաստատվի ոչ թե զենքով ու արյունով, այլ՝ ուժով ու ճարպկությամբ»: Ըստ այդ պայմանագրի չորս տարին մեկ պետք է տեղի ունենար սպորտային մեծ տոնակատարություն, որի ժամանակ ամբողջ Հելլադայում պետք







է լոեր զենքի շաչյունը: Սրբազան էր հայտարարվում ոչ միայն Օլիմպ լեռան ստորոտը, այլև ամբողջ էլիդեն: Ոչ ոք իրավունք չուներ զենքը ձեռքին մտնել այնտեղ: Լիկուրգոսը համաձայնեց Իֆիտոսի առաջարկությանը, և դրա պատվին սպորտային մեծ մրցություններ կազմակերպվեցին: Օլիմպիական խաղերի պայմանագիրը փորագրվեց այն սկավառակի վրա, որն ամենից հեռու բռավ: Այդ սկավառակը դրին Հերա աստվածուհու տաճարում, որտեղ և այն պահվեց հազար տարուց ավելի:

Օլիմպիայում, Ալբեյ գետի գեղածիծաղ հովտում, Կրոնոս բլրի ստորոտում կանգնած էր մի նշանավոր տաճար, որտեղ դրված էր աստվածների տիրակալ Զևսի փղոսկրյա արձանը: Այդ ոսկե արձանն այնքան գեղեցիկ էր և հոյակապ, որ դեռ հնում համարվում էր աշխարհի յոթ հրաշալիքներից մեկը: Զևսի տաճարից ոչ հեռու, սրբազան պուրակի մոտ էին գտնվում սպորտային կառուցվածքները՝ գիմնազիոնները, մրցարանը, ստադիոնը: Հելլեն պատանիներն այստեղ զանազան վարժություններ էին անում և զարգացնում իրենց ուժն ու ճարպկությունը:

Երեք տարի սրբազան պուրակում լռություն էր տիրում: Բայց ամեն չորրորդ տարում, ամառային արևադարձից հետո առաջին իսկ ամսին, որի սկիզբը զուգադիպում էր լուսնի լրումին, սկսվում էր հելլենների մեծ տոնը՝ Օլիմպիական խաղերը:

Նախքան խաղերն սկսելը Հելլադայի բոլոր կողմերը մունետիկներ էին ուղարկվում: Նրանք ժողովրդին ազդարարում էին, թե երբ է սկսվելու օլիմպիադան և հայտարարում էին էքեխիրիա՝ սրբազան զինադադար:

Սկզբում Օլիմպիական խաղը վարում էր մեկ դատավոր, որը անպայման պետք է լիներ Իֆիտոս թագավորի սերնդից: Ժամանակի ընթացքում դատավորների թիվը հասավ տասի: Այդ դատավորները կոչվում էին հելլանոդիկներ:

Օլիմպիական խաղերը ամենախիստ կանոնների էին ենթարկվում և սկսվում էին մասնակիցների հանդիսավոր երդումով, որ սրբությամբ կրպահպանեն այդ կանոնները: Հիմնական կանոնն ասում էր, որ հաղթանակը ձեռք է բերվում ազնիվ պայքարով: Իզուր չէ, որ Զևսի արձանի վրա գրված էր. «Ոչ թե փողով, այլ ոտքերի արագությամբ և ուժով է ձեռք բերվում օլիմպիական հաղթանակը»:

Սկզբում ատլետները մրցում էին միայն կարճ վազքով՝ մեկ ստադիա (ասպարեզ), այսինքն՝ 192 մետր 27 սանտիմետր: Այս առաջին դիստանցիայի անունից էլ սկիզբ է առել «ստադիոն» բառը: Հունական ստադիոնը նման չէր մեր այժմյան ստադիոնին: Դա պարզապես մեկ ստադիա երկարությամբ հասարակ ճանապարհ էր: Ճանապարհի ծայրերին մի-մի սյուն էր տնկված: Երբ հետագայում մտցվեց երկու ստադիայի վազք. հելլեն ատլետները վազում էին մինչև սյունը և նրա շուրջը դառնալով՝ ետ էին վազում մինչև ստարտի տեղը: Ամենաերկար դիստանցիան քսանչորս ստադիա վազքն էր, որ կազմում էր մոտ չորս ու կես կիլոմետր:



Աստիճանաբար ծրագիրն ընդարձակվում էր: Մտցվեցին կառարշավի, ըմբշամարտի, զենքը ձեռքին վազքի մրցություններ, և վերջապես, պենտատլոնի մրցություններ: Պենտատլոնի մեջ էին մտնում բոլորը երկարությունը, վազքը, ըմբշամարտությունը, նիզակ նետելը, սկավառակ նետելը: Դա ներկայիս հնգամարտի նախատիպն էր:

Հին Հելլադայի խոշորագույն գործիչները հաճախ էին օլիմպիադաներին մասնակցում: Կառարշավի մրցություններին մասնակցել է նաև Ֆիլիպոս Մակեդոնացի թագավորը՝ Ալեքսանդր Մակեդոնացու հայրը, իսկ նշանավոր մաթեմատիկոս Պյութագորոսը օլիմպիադայում հաղթող է դուրս եկել բռունցքամարտի մեջ:

Օլիմպիական խաղերը հետաքրքրում էին բոլոր հելլեններին: Այդ խաղերի ժամանակ ծաղիկներով զարդարված մարդկանց բազմությունները երկրի բոլոր կողմերից հոսում էին դեպի Օլիմպիա: Դեռ երեկոյից հարմար տեղ գրավելով՝ նրանք ամբողջ գիշերը համբերությամբ սպասում էին մրցություններն սկսվելուն: Հին-հունական գրող Լուկիանոսը, որը հինգ անգամ ներկա է եղել օլիմպիական խաղերին, պատմում է, որ ո՛չ կիզիչ արեգակը, ո՛չ տանջալի ծարավը, ո՛չ փոշին ու նեղվածքը չէին կարող սպառել հանդիսատեսների համբերությունը: Բանից դուրս է գալիս, որ երեք հազար տարի առաջ էլ եղել են «բոլեյշչիկներ»: Նրանք էլ մեր ժամանակների «բոլեյշչիկների» պես հուզվել են, գոռացել, խրախուսել իրենց սիրելիներին: Նրանք էլ, ինչպես այժմ, պատրաստ են եղել, ինչ գնով էլ լինի, ընկնել մրցությունների վայրը:

Բոլոր կանանց, բացառությամբ Հերայի տաճարի քրմուհու, մահապատժի սպառնալիքով արգելված է եղել խաղերը դիտել: Ավանդությունը պատմում է մի կնոջ մասին, որը տղամարդու շոր հագած խցկվել է ստադիոն: Դա եղել է Թերենիկան: Նա ղեկավարելիս է եղել իր որդու վարժությունները և ցանկացել է տեսնել նրա հաղթանակը: Բայց նրան չի հաջողվել խաբել խիստ դատավորներին: Թերենիկային բռնել են: Նրան մահապատիժ էր սպասում: Պետք է ժայռի գլխից անդունդը գցեին: Դատավորները Թերենիկային խնայել են միայն նրա համար, որ նրա հայրն էլ, ամուսինն էլ, եղբայրն էլ, որդին էլ զանազան ժամանակներում օլիմպիական խաղերում հաղթող էին եղել:

Մի անգամ Դեմիլ անունով մի գյուղացի տեսնում է, թե ինչպես իր Գլավկոս տղան բռունցքի հարվածով խոփը գետնի մեջ խրեց: Որդու այդպիսի ուժից զարմացած՝ հայրը նրան տանում է օլիմպիական խաղերին: Բայց մրցության ժամանակ Գլավկոսն սկսում է թուլանալ: Դեմիլը նկատում է այդ, հուզվում է, ինչպես բոլոր սպորտասեր մարդիկ, և ամբոխի աղմուկը խլացնելով գոռում է. «Որդի՛ս, մի ընկնիր, հիշիր խոփը»: Հոր խոսքերը լսելով՝ Գլավկոսը ժողովում է իր ուժերը, հակառակորդին մի սոսկալի հարված է հասցնում և հաղթանակ տանում:

Իմաստուն – փիլիսոփա Սոկրատը նույնպես սպորտ շատ է սիրել: Նա Աթենքից Օլիմպիա էր գալիս ոտքով, երկու հարյուր կիլոմետրից ավելի ճանապարհ կտրելով: Երբ մի աթենացի այդ իմանալով զարմանք է հայտնում, Սոկրատը նրան պատասխանում է. «Սիրելի բարեկամ, ինչո՞ւ ես զարմանում: Հապա մի մտա-

## ԻՆՉՈ՞Ւ ԵՆՔ ԱՍՈՒՄ «ՍՊԱՐՏԱԿԻԱԴԱ»

*Ձեզանից շատերը գիտեն, թե ով է եղել Սպարտակը: Թրակիացի ստրուկ Սպարտակը, որ գլադիատոր էր Կապուա քաղաքում, մեր թվարկությունից առաջ 74 թվականին ապստամբություն կազմակերպեց Հռոմի դեմ: Բոլոր կողմերից նրա դրոշի տակ եկան ստրուկները: Սպարտակի բանակը շարունակ մեծանում էր: Նրանց դեմ ելած հռոմեական զորքերը ջախջախվում էին: Ճիշտ է հետագայում նա պարտություն կրեց, բայց Սպարտակը պատմության մեջ մտել է որպես ճնշողների դեմ ելած մի անձնուրաց մարտիկ: Վ. Ի. Լենինն ասում էր, թե «Սպարտակը ստրուկների ամենախոշոր ապստամբությունների մեկի ամենանշանավոր հերոսներից մեկն էր»:*

*20-րդ դարի սկզբներին միջազգային բանվորական կազմակերպություններն ստեղծեցին իրենց բանվորական սպորտային կազմակերպությունները, նրանք որոշեցին բանվորական մասսայական սպորտային մեծ միջոցառումները ի պատիվ լեգենդար հերոս Սպարտակի կոչել Սպարտակիադաներ:*

*Սպարտակիադաների կազմակերպումը հատկապես տրադիցիա դարձավ մեր երկրում: Եղբայրական ռեսպուբլիկաների առաջին Սպարտակիադան կազմակերպվեց Մոսկվայում, 1928 թվականին: Օրերս տեղի ունեցող Սպարտակիադան մինչև այժմ անցկացվածներից ամենամեծն է:*

ծիր, դու ամբողջ օրը քո տանը չե՞ս ման գալիս: Եթե հինգ-վեց օրվա ընթացքում քո տանը ման եկածներն ու զբոսանքները գումարես իրար, ավելի քիչ տարածություն չի՞ ստացվի, քան Աթենքից Օլիմպիա»:

Հունաստանում չկար ավելի պատվավոր բան, քան օլիմպիական խաղերում հաղթանակ տանելը: Պարգևատրության հանդիսավոր արարողությունը տեղի էր ունենում օլիմպիադայի վերջին օրը, Զևսի տաճարի առաջ: Ոսկե դանակով կտրած արքայական ձիթենու ճյուղերից պսակներ էին հյուսվում, և դատավորներն այդ պսակները դնում էին հաղթողների գլխին: Մունետիկները բարձր ձայնով տալիս էին պսակի արժանացած երիտասարդի անունը, հոր անունը և այն քաղաքի անունը, որտեղ ծնվել էր նա: Լավագույն քանդակագործները մարմարից քանդակում էին հաղթող ատլետների արձանը և այդ արձանները դրվում էին Զևսի տաճարում: Երբ հերոսը հայրենիք էր վերադառնում. այնտեղ նրան նորանոր պատիվներ էին սպասում: Բանաստեղծները ներբողներ էին ձոնում նրան, նա ազատվում էր հարկերից, թատրոնում նրան լավագույն տեղն էին հատկացնում: Երբեմն որպես առանձին պատիվ՝ քաղաքի պարիսպում առանձին անցք էին բաց անում, որ նա այնտեղով քաղաք մտնի:

Առաջին օլիմպիական խաղերը տեղի են ունեցել մեր թվականությունից առաջ 776 թվականին: Տասներկու դար կատարվում էին Իթիտոսի և Լիկուրգոսի սահմանած պայմանները: Բայց երբ հռոմեացիները Հելլադան նվաճեցին, այդ սքանչելի ազգային սովորությունը քիչ-քիչ սկսեց մոռացվել: Հետո, երբ քրիստոնեությունը տարածվեց, հռոմեական Թեոդոսիոս կայսրը օլիմպիական խաղերը բոլորովին արգելեց որպես կռապաշտական սովորություն:



### Օգնեցեք Գագիկին

*Գագիկին առաջարկվել է այս տասը գնդակները դասավորել հինգ շարքում այնպես, որ ամեն մի շարքում գտնվեն չորս գնդակ: Շարքերը կարող են հատվել: Գագիկը դժվարանում է, օգնեցեք նրան լուծելու այս առաջարկը: Ֆուտբոլի գնդակների փոխարեն կարող եք օգտագործել ցանկացած խաղաքարեր:*



### Փորձեցեք դասավորել

*Ձեռքի անզգույշ շարժման պատճառով խառնվել են շախմատի խաղատախտակի առաջին հորիզոնական շարքում գտնվող հինգ ֆիգուրաները՝*



*սպիտակ արքան, սպիտակ թագուհին, սպիտակ փիղը, սև նավակը և սև փիղը, որոնք դասավորված էին a1, b1, c1, d1 և e1 դաշտերի վրա:*

*Փորձիր վերականգնել ֆիգուրաների դասավորությունը, եթե հայտնի է միայն, որ արքան ու թագուհին չէին գտնվում իրար կողքի, բայց երկուսն էլ կարող էին շարժվել իրենց տեղերից միայն երկու ուղղություններով:*

*Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

# ՀԻՆԳ ՕՂԱԿ

*Այս խաղի համար անհրաժեշտ է մեկ մետր երկարություն ունեցող 12—15 ձող և ճկուն ճիպոտներից պատրաստած 5 օղակ։ Թելի օգնությամբ հրապարակում պետք է գծել 25—30 քայլ տրամագծով մի շրջան։ Հետո ձողերը շրջագծի ուղղությամբ խփել հողի մեջ՝ իրարից հավասար հեռավորության վրա։ Ձողերն անհրաժեշտ է տեղադրել շրջագծի ուղղությամբ, մեկը գծից մի քայլ ներս, իսկ մյուսը՝ մի քայլ դուրս։*

*Խաղը վարում է մեկը, իսկ մյուսները, որպես «պահակներ» կանգնում են մեկական փայտիկների մոտ. երեք փայտիկ պետք է մնա անպաշտպան։*

*Խաղացողը պետք է բոլոր 5 օղակները հագցնի մեկ կամ մի քանի ձողերի վրա։ Բայց դա հեշտ չէ, քանի որ «պահակները» ամբողջ ժամանակ վազվզում են մի ձողից մյուսը։ Խաղացողը իրավունք ունի անպաշտպան մնացած ձողի վրա հագցնելու միայն մեկ օղակ։ Երբ բոլոր հինգ օղակները հագցված են ձողերին, խաղացողին փոխարինում է «պահակներից» մեկը։*



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




*Շապիկի առաջին էջը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*
*Չորրորդ էջը՝ նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

*Համարի ձևավորումը և գեղարվեստական խմբագրությունը՝ Գ. ԽԱՆՋՅԱՆԻ*

Ձեռագրերը չեն վերադարձվում

**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 02805։ Պատվեր 793։ Տիրաժ 5000։ Տպագրական 4,1 մ.։ Ստորագրված է տպագրության 10/VIII 1956 թ.։ Գինը 2 ռ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

# «ՊԻՈՆԵՐԸ» ԿԱՆԱՉ ԹԱՏՐՈՆՈՒՄ





*Նկարում՝ 1. Պիոներները կանաչ թատրոնում։*
*2. Ռեսպուբլիկայի ժողովրդական արտիստ Ավետ Ավետիսյանը ելույթ ունենալիս։*
*3. «Կանազի» ճամբարի պիոներ Սաթիկ Հարությունյանը և Կարինե Սաֆրազյանը երգում են ժողովրդական երգ։*

Ծառերը երեք կողմից շրջապատել են կանաչ, ծաղկաշատ բացատը։

Արևոտ կեսօր է։ Լույսի շողերը բռնում են կանաչ սաղարթներում, խաղում գույնզգույն թիթեռների հետ։ Վերից անցնում է թռչունների երամը։ Մոտիկ, շա՜տ մոտիկ ճռվողում են ճնճղուկները։ Օրվա այս ժամերին այստեղ միշտ եռուզեռ է։ Բայց այսօր արտակարգ օր է առանձնապես։ Պիոներները իրենց կանաչ թատրոնում ընդունելու են սիրելի հյուրերին, «Պիոներ» ամսագրի խմբագրության բրիգադին՝ հայ գրականության և արվեստի աշխատողներին։ Բոլորն անհամբեր սպասում են։ Ահա պիոներներից մեկը գոչում է.

— Եկա՜ն, եկա՜ն։

Այդ խոսքը փոխանցվում է շուրթից շուրթ։

— Զգա՛ստ,— լսվում է ավագ ջոկատավարի ձայնը։ Նա առաջ է գալիս ու զեկուցում.

— Ճամբարների խորհրդի նախագահ ընկեր Մնացականյան, Տարրական և միջնակարգ դպրոցների միության և Կանազի պիոներական ճամբարները պատրաստ են հանդիպման։

Ի՜նչ ցնծություն, ի՜նչ հրճվանք։ Երեխաները լեռնային վառ ծաղիկներից հյուսած ծաղկեփնջեր են նվիրում սիրելի արտիստներին ու գրողներին։

Պիոներների ծափերի տարափի տակ ելույթ է ունենում ռեսպուբլիկայի ժողովրդական արտիստ Ավետ Ավետիսյանը։ Նա արտասանում է հատվածներ «Քաջ Նազարից», «Խաթաբալայից»... Կլանված լսում են երեխաները և աչքի առաջ վերակենդանանում են փչան Սաքոն, վաճառական Զամբախովը։ Երբեմն-երբեմն աշխուժանում են նրանք, երբ վարպետը ծիծաղելի բան է պատմում։

Ապա կանաչ բացատում է բանաստեղծ Սարմենը։ Նա արտասանում է ոտանավորներ, որ ինքը գրել է այստեղ՝ Ծաղկաձորում և նվիրված է երջանիկ մանկությանը։ Իրենց լավագույն գործերն են արտասանում բանաստեղծներ Վ. Տալյանը, Խ. Հրաչյանը, Ա. Մկրտչյանը։ Գ. Սունդուկյանի անվան թատրոնի արտիստ Ջալիկյանը կարդում է ռուս բանաստեղծ Եսենինի «Ընկերները» բանաստեղծությունը, որ այնքան հիանալիորեն փոխադրել է Եղիշե Չարենցը։

Այնուհետև սկսվում են երեխաների ելույթները։ Կանաչ թատրոնում պարում, երգում և արտասանում են նրանք։ Թնդում է մանուկների երգը մեծ Լենինի մասին, երգին միահյուսվում է նվագախմբի նվագը։

Այսպիսի լավ հանդիպումներ եղան տեղարդ, գյուղական և քաղաքային շինարարության, կոմունալ, տեքստիլ արդյունաբերության, կուլտուրայի աշխատողների արհմիությունների պիոներական ճամբարներում։

Մթնեց։ Վառվեց պիոներական խարույկը։ Կանաչ բացատը ներկվեց վառ դեղնակարմիր գույներով... Կրակի հրավառ ցոլքերը պարում էին շրջապատում... Պարում և երգում էին երջանիկ մանուկները, նրանց ձայները արձագանքում էին մութ անտառում, թռչում հեռո՜ւ-հեռո՜ւ...













Պստիկ Խոստիկի և Երկար Մակարի արկածները